# ԵՍ ԳԻՏԵՄ, ՈՐ ԱՄԵՆԱՃՈՒՏՆ ԱՅՍՕՐ ԵՄ ՀԱՍՆԵԼՈՒ ՏՈՒՆ

ԶՈՒԼՅԱ ՄԱՏԻՆՅԱՆ



Մայրիկին խոսք էի տվել, ինչ կերպ էլ լինի, պատմվածք գրել տանձի, խնձորի ու աշխարհի մասին: Դե, տանձը տանձ է. ուտելիս շուրթերդ ճըպ-ճըպացնում ես, խնձորն էլ ամենալավ միրգն է ամռան ու ձմռան կեսերին: Իսկ աշխարհը խնձորից այնքան մեծ է, որ գրել վախենում եմ:

Եվ ընդհանրապես իմ դպրոց գնալ-գալը մի-մի պատմվածք է. հարկավոր է միայն ուշադիր նայես շուրջդ, պայուսակներին, երեխաներին, թանաքին ու գրիչին, մեկ էլ՝ տանձ ու խնձոր տեսնելիս չմտածես միայն ուտելու մասին:

Մինչ ես մտածում էի այս բոլորի մասին և ուզում՝ ինչ կերպ էլ լինի, մի որևէ պատմվածք հորինել, մարտի 8-ը հոլի պես գլորվելով մոտենում էր:

Ես ուզում էի ինչ-որ մի տեղ մատս շարժել, որպեսզի մի քանի օրով հոլը կանգներ, փոխվեր ամեն ինչ, քնեի, վեր կենայի և պատմվածքը գրված, մեքենագրված մեկնեի մայրիկին: Ու այդ օրը լիներ մատիս կախարդական շարժումով մի քանի օրով կանգնած մարտի 8-ը:

Ես, թեև ցածր դասարանի աշակերտ եմ, բայց համարյա անգիր գիտեմ աշակերտական վարքի բոլոր կանոնները՝ ծայրից-ծայր. այն, որ ուսուցիչ տեսնելիս գլխարկը վերցնում են, որ դասին խոսել չի կարելի, չի կարելի հրել կողքդ նստած Սուրիկին, որ նկարչության դասին պետք է նկարել, հարցեր տալ ձեռք բարձրացնելուց հետո և խոսել միայն, երբ ուսուցիչը կասի՝ [illegible]... Ես այս բոլորը գիտեմ, ազնիվ խոսք, ու կարող եմ համարյա առանց շփոթվելու այդ ասել նաև մայրիկին, իսկ մայրիկը հպարտանալով իմ սուր հիշողությամբ՝ կժպտա, իսկ ես ոգևորությամբ կավելացնեմ.

— Ամենալավ բանը տանձն է, խնձորը, դու, մայրիկ, մեկ էլ՝ նկարելը:

Այս բոլորը գիտեմ, բայց երբ դպրոցում եմ և գալիս է զանգի ժամը՝ ես մի րոպեում մոռանում եմ և, զանգը դեռ չտված, հանույքից ճչալով՝ դուրս եմ վազում, առանց նայելու, որ նկարչության դասատուն բարկացած ասում է.

— Ու՞ր...

Նկարչության դասատուն է, այսինքն՝ ընկեր Գեղեցիկը:

Ընկեր Գեղեցիկը համարյա նման չէ մյուս դասատուներին ու գիտի ամեն ինչ նկարել: Իսկ այդ մեզ համար նշանակում է ուղղանկյունի, հաստ թղթերով տետր, գունավոր մատիտների տուփ, մեկ էլ՝ գունավոր մի աշխարհ, որի մեջ է ընկեր Գեղեցիկը:

Մազերը սև ու հարթ են, կարծես հարդարել են տարիներով:

Հիմա կպատմեմ, թե ինչից սկսվեց ամենահիմնականը, այն, թե այսօր առաջին անգամ ինչու ամենաշուտը պետք է տուն հասնեմ և թե ինչ օր է այսօրը:

Մինչ այդ մենք նկարել էինք շատ բան, մեկ էլ՝ մեր սովորական նստարանը, որի քառակուսի ոտքը սարսափելի երկար էր ստացվում, որքան էլ աշխատում էի հավասար ու լավը նկարել, քան իրականում կար:

Եվ այսպես, ընկեր Գեղեցիկը այսօր եկավ, սովորականի պես մտավ դասարան, սովորականի պես ոտքի կանգնեցինք և անսովոր կերպով ժպտալով՝ շնորհավորեցինք նրա տոնը: Հետո նա հուզմունքից կարմրեց: Մենք լրջորեն պատրաստ-

ՀՈՒՆԻՍ
№ 6 1965 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

վեցինք նկարել, ավելի շուտ նայել ընկեր Գեղեցիկի հուզված դեմքին, մատներին, որոնք գիտեն ամեն ինչ նկարել։

Նա հանեց մի գիրք, որից հետո սկսվեց նկարչության դասը։ Գրքի առաջին էջում նկար կար՝ արտ, սովորական կոմբայն, որը կալսում էր, մեկ էլ՝ ծանրությունից խոնարհված հասկեր։

Նա ասաց.

— Արտը... առաջ հող է եղել, պինդ ու քարքարոտ, հետո քարերը փոցխել են, վարել, հեռացրել կոշտերը, հետո էլ բարի սերմնացանները ցանել են ոսկի ցորեն, իսկ հետո ցորենը հողում արևի կարոտից ծլել է, կանաչել է արտը, հասել ու ծփացել է քամու մեղմ հպումից։ Եկել է հնձելու պահը, հնձացել է կարմիր մի կոմբայն, ցողունից կտրված հասկերը խոնարհվել են, որ կալսվեն, դառնան ալյուր, հաց ու կյանք։ Նկարեցեք այդ արտն ու ցորենը։

Տիրեց լռություն, որ նման չէր մինչ այդ եղածներին։ Ես ոչ միայն ցորենը տեսա, այլև արտ վարողի քրտինքը, սերմնացանի ժպիտը, լսեցի և կարմիր կոմբայնի հնձոցը։ Այս տեսան նաև Վահանը, Խաչիկն ու Անոն։

Ուզեցի այդ մասին անպայման ասել ընկեր Գեղեցիկին, բայց նա ասաց.

— Հարցերը՝ դասի վերջում... Իսկ հիմա նկարենք։

Նա սկսեց նկարել գրքի գունավոր աշխարհը գրատախտակի հարթ երեսին։ Նկարելիս մատները կավիճից սպիտակեցին։

Աշխատում էի նայել ու նկարել, բայց մատիտըս սահում, փախչում էր թղթից։ Ստիպված կանգնեցի գլուխս, հետո էլ հաշվում էի տուփիս կարմիր ու կանաչ, ամեն գույնի մատիտները։ Ես ուզում էի, որ դրանք առանց ինձ նկարեն։ Ընկեր Գեղեցիկը հետո հերթով մոտեցավ բոլորին, ուղղեց, ձեռքը դրեց Անոյի, Վահանի ու Խաչիկի գլուխներին։ Երբ հասավ ինձ՝ ավելի էր հակվել գլուխս։ Նա թեքվեց իմ նստարանին, ուր թղթի վրա կիսատ արտ կար, մատիտների կիսաբաց տուփ, մեկ էլ՝ փոքրիկ մի ձեռք, որի մատների մեջ դողում էր կարմիր մի մատիտ։

Սկզբից մինչև վերջ ես ուզեցի ասել, թե ամենալավ նկարը կյանքում այդ ցորենի արտն է, որը քամու շոյանքից խոնարհվում է, մեկ էլ՝ փայլուն կոմբայնը, որն արևի տակ նմանվում է շիկնած հրաշքի։

Ուզեցի ասել այդ բոլորը, բայց հանկարծ ինքս



ինձ տեսա նրա խոնարհված աչքերում և... մոռացա ասելիքս։ Եվ այդքան մոտիկից չէի նայել նրա աչքերին։

Նա հանդիմանանքով շարժեց գլուխը, երբ նայեց կիսատ նկարին ու գնաց:

Իսկ ես շարունակեցի մտածել աշխարհի երկար դեմքերի ու պարզ աչքերի մասին, որոնց մեջ ավելի գեղեցիկ է երևում աշխարհը:

Ես հենց նոր, երբ նա հեռացավ իմ մոտից, հասկացա, որ ընկեր Գեղեցիկի աչքերի մեջ, բացի ինձանից, արտի ծփանքը կար, մեկ էլ՝ սերմնացանի բարի ժպիտը:

Ես չկարողացա նկարել. չգիտեմ նրանի՞ց, որ քիթս գեղեցիկ չէ, որ ընկեր Գեղեցիկի աչքերն այնքան պարզ ու խորն են, թե՞... պարզապես նկարել չգիտեմ: «Ոչինչ,— մխիթարեցի ինքս ինձ,— ոչինչ, որ չկարողացա նկարել ցորենի այդ արտը, որ սեղանի մի ոտքը ինձ մոտ երկար է ստացվում»,— և դուրս վազեցի զանգը դեռ չլռած:

— Այդ բոլորը ոչինչ, այդ բոլորը մի օր կլինի,— ուզում եմ մոտենալ ու ասել ընկեր Գեղեցիկին: Ասել, որ սրանք դեռ այն չեն, ինչ ուզում էի անել և դեռ էլի կանեմ...

Դասերից հետո մոտեցա նրան, բայց հիշելով իմ դեմքը, նորից մոռացա. երևի կմտածի, որ բոլորովին հիմար եմ, որ մոռանում եմ հեշտ ասելիքը: Հետո էլ մի կերպ հիշելով, կմկմացի.

— Ես... ընկեր Գեղեցիկ...

— Ասա, Արամ...

— Ես ուզում էի ասել, որ այսօրվա արտը...

— Գիտեմ, Արա՛մ,— միտքս հասկանալով՝ ժպտաց նա: Նրա ժպիտից լուսավորվեցի և ես:

— Ցտեսություն, ընկեր Գեղեցիկ, ես ուզում էի այսօրվանից ամեն ինչ ավելի լավ անել, և ամենից լավ նկարել հենց այդ արտը:

Չգիտեմ, ներե՞ց ինձ կիսատ արտի համար, թե՞...

Ես չզգացի, որ բոլորովին մոռացել եմ աշակերտական կանոնների բոլոր կետերը, երբ ճեղքելով ուսուցիչների շղթան՝ դուրս փախա:

Բայց ես գիտեմ, որ ինչ-որ լավ ու տխուր բանից մղված, ամենաշուտը այսօր եմ հասնելու տուն, առաջին անգամ: Ես գիտեմ, որ տուն հասնելուն պես շնչասպառ ասելու եմ մայրիկին.

— Աշխարհի ամենալավ բանը նկարելն է, մարտի 8-ը, այսօրվա արտն ու ընկեր Գեղեցիկը: Շնորհավոր տոնդ, մայրիկ: Իսկ իմ դեմքը այնքան էլ տգեղ չէ:

Ասելու եմ, փայլելու են մորս աչքերը, երբ հասկանա բոլորը: Ասելու եմ, որ աշակերտական կանոնները ծայրից-ծայր գիտեմ, որ չի կարելի անել վատը... Իսկ գլխավորն այն է, որ ես գիտեմ արտի, ցորենի, բարի սերմնացանի, մարտի 8-ի ու կարմիր կոմբայնի մասին:

Եվ ինչ լա՜վ է, որ ընկեր Գեղեցիկի աչքերի մեջ երևում է աշխարհը, իսկ մազերը սև ու հարդարած են: Եվ ինչ լա՜վ է, որ այսօր մարտի 8-ն է, թեև չեմ վերջացրել հենց նոր սկսած պատմվածքս, որքան էլ մայրիկը շտապեցնում է... իսկ աշխարհն ավելի է մեծացել աչքիս:



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## Մեր դասարանի

# „ԼԻՊԻԿԸ"

ՀԱՆՐԻ ՋԱՐՅԱՆ

Երբ նա մտավ դասարան, մենք խկույն շրջապատեցինք նրան: Յուրիկն ասաց, որ նա մեզ հետ է սովորելու: Ես սկսեցի հարցեր տալ Յուրիկին, բայց Յուրիկը չէր պատասխանում իմ հարցերին: Իսկ նորեկը զննում էր մեզ բոլորիս: Ես էլ սկսեցի նրան զննել: Նա ուներ սև, ընկուզանման աչքեր և անմեղ ու բարի հայացք: Հետո նա մոտեցավ Յուրիկին ու նստեց նրա կողքին: Յուրիկը, երևի, նրան դուր եկավ առաջին հայացքից, որովհետև երբ դասն սկսվեց, նրանք արդեն մտերիմների պես փսփսում էին իրար ականջի... Կամ գուցե մինչև այդ ծանո՞թ էին իրար, ես ի՞նչ իմանայի...

Ես ուզում էի, որ նա ի՛մ կողքին նստեր, որովհետև նա այնքա՜ն բարի հայացք ուներ, բայց նստեց Յուրիկի կողքին: Եվ մտածում էի, թե ինչո՞ւ նա իմ կողքին չնստեց: Ես չէի սիրում Յուրիկին: Նա էլ ինձ չէր սիրում, որովհետև ես թույլ չէի տալիս, որ նա քաշեր աղջիկների մազերից կամ վիրավորեր իրենից թույլերին:

Դասամիջոցին Յուրիկն ու իր նոր ընկերը փսփսալով խաղում էին ուտում: Եվ հանկարծ նա՝ Յուրիկի նոր ընկերը, խաղողի չանչը շպրտեց երեսիս:

Բոլորը զարմացան: Զարմացա և ես: Ուղղակի չէի հավատում: Իսկ Հայմիկը զայրացած էր: Հասմիկն այդպես է, ոչ մի անարդար բան չի կարողանում տանել:

Յուրիկը ժպտում էր ոչ բարի հայացքով: Նայեցի նորեկին, նրա հայացքն էլ նմանվել էր Յուրիկի հայացքին...

— Ինչո՞ւ ես չանչով խփում,— հարցրեցի ես:

— Այդպես է ուզում,— մեջ մտավ Յուրիկը:

— Ինչի նա ո՞վ է,— զարմացա ես:

— Լիպիկի եղբայրն է,— հանդիսավոր ձայնով հայտարարեց Յուրիկը:

Դասարանում լռություն տիրեց: Բոլորի վրա էլ կարծես թե ազդեց Յուրիկի հայտարարությունը: Ես վարանեցի. «Ո՞վ կարող է լինել այդ Լիպիկը, որի եղբայրը որոշել է հենց առաջին օրվանից անկարգություններ մտցնել մեր դասարանում, չնայած այնքան անմեղ հայացք ուներ, երբ նոր մտավ դասարան»...

ԱՐԵՎԸ

ԳԵՎՈՐԳ ԱՂԱՋԱՆՅԱՆ

*Մի օր արևի գովասանքն արին.*
*— Առանց քեզ, օ՛, ի՞նչ կլիներ տարին,*
*Դու լույս ես տալիս արար-աշխարհին,*
*Ջերմություն ու շող՝ հողին ու քարին,*
*Գարուն ես բերում՝ երգով ծիծառի,*
*Կյանք ես պարգևում ծաղկին ու ծառին...*

*Արևը վերից խոսեց ժպտալից.*
*— Ոչինչ չեմ գտնում ես զարմանալու.*
*Չէ՞ որ աշխարհին ես այն եմ տալիս,*
*Ինչ ունեմ տալու:*

***

Այդ օրվանից Լիպիկի եղբայրը իշխում էր մեր դասարանում: Իսկ մի քանի օր հետո լուրը տարածվեց նաև մյուս դասարաններում, և բոլորն արդեն վախենում էին նրանից: «Լիպիկի փոքր եղբայրն է»,— փսփսում էին իրար ականջի...

Իսկ Լիպիկի փոքր եղբայրն անում էր, ինչ ուզում էր: Քաշում էր աղջիկների մազերից, թռչում տղաների շալակը, ծաղրում բոլորին և խաղողի չանչեր շպրտում ինձ վրա: Եվ ես էլ լռում էի, որովհետև այդ ընկուզանման աչքերով տղան Լիպիկի եղբայրն էր: Բայց թե ո՞վ էր այդ Լիպիկը՝ ոչ ոք չգիտեր:

Որոշեցի հերթով բոլորին հարցնել: Բայց բոլորն էլ անորոշ կերպով ուսերն էին թափ տալիս: Մտածեցի, որ ավելի լավ է՝ առայժմ համբերեմ: Բայց համբերությունս արդյունք չէր տալիս: Լիպիկի եղբորը, երևի, շատ մեծ բավականություն էր պատճառում չանչով երեսիս խփելը: Շուտով աղջիկներն էլ սկսեցին ծիծաղել վրաս ու ես այլևս չդիմացա, որոշեցի գոնե սպառնալ:

— Կասեմ ընկեր Էմմային,— ասացի ես:

— Վա՜յ,— զարմացած ոտքի ելավ Յուրիկը: Հնչեց դասի զանգը...

***

Մյուս օրը դասարան մտա շատ տխուր դեմքով: Համիկը հարցրեց, թե ինչ է պատահել ինձ, բայց ոչինչ չպատասխանեցի: Հետո նա Յուրիկից էր իմացել տխրությանս պատճառը. Լիպիկի եղբայրը դըրսում սպառնացել էր ինձ ու ասել, որ եթե խաբարբըզանություն անեմ, վատ կլինի վերջս:

Եվ նորից համբերում էի: Իսկ նա ամեն օր խաղողն ուտում էր, չանչը շպրտում երեսիս: Յուրիկը ժպտում էր իր ոչ բարի ժպիտով, իսկ աղջիկները ծիծաղում էին: Նույնիսկ Գագիկն էր ծիծաղում վրաս. Գագիկը, որին մի ժամանակ ես այնքան պաշտպանում էի Յուրիկից: Պատկերացնու՞մ եք: Նա երևի չգիտեր, թե ինչ բան է խաղողի չանչը:

Միայն Համիկը չէր ծիծաղում վրաս... Ես չգիտեի ինչ անեի: Բայց որ Համիկը չէր ծիծաղում, դա ինձ մխիթարում էր և աշխատում էի խույս տալ Լիպիկի եղբորից: Բայց նա գտնում էր ինձ և չանչը նորից՝ երեսիս: Եվ այդպես՝ օրեր, շաբաթներ: Նրան հատկապես գրգռում էր այն, որ Համիկը համառ կերպով չէր ծիծաղում, ու հենց դրա համար էլ ձեռք չէր քաշում ինձանից: Հակառակի պես էլ աշուն էր, խաղողն էլ՝ առատ ու էժան: Գոնե ձմեռը շուտ գար, և այդ անիծյալ խաղողը վերջանար: Բայց հետո ծիծաղում էի ինքս իմ անմըտության վրա: Ի՞նչ օգուտ դրանից, ձմռանն էլ նա, երևի, մանդարինի կճեպներով կռմբակոծեր ինձ: Մի՞թե նրա համար որևէ տեսակի կճեպ չէր գտնվի, որ շպրտեր երեսիս կամ, ընդհանրապես, տարվա մեջ կա՞ր այդպիսի մի եղանակ, որ մի որևէ տեսակի կճեպավոր պտուղ չլիներ...

Իսկ Համիկը գնալով ընդունում էր ավելի վայրացած տեսք, և աչքերում ինչ-որ խորհրդավոր կայծերը նորից ու նորից մխիթարում էին ինձ ու հավատով լցնում դեպի ապագան, ես զսպում էի ինձ և որոշում մի փոքր էլ համբերել:

Բայց նա՝ Լիպիկի եղբայրը, չկարողացավ այլևս տանել Համիկի անտարբերությունն ու մի օր քաշեց նրա մազերից: Այդ արդեն չափից անց էր:

— Թո՛ղ նրան,—վերջապես պայթեցի ես:

Նա բաց չթողեց աղջկա մազերն ու իր սև, ընկուզանման աչքերը հառեց վրաս...

— Գիտե՞ս քեզ ինչ կանի,—նորից մեջ մտավ Յուրիկը:

— Ինչ ուզում է անի, բայց թող չքաշի Համիկի մազերից,—պատասխանեցի ես՝ ամբողջ մարմնով դողալով:

— Թե չէ ի՞նչ կանես,—հարցրեց Յուրիկը:

— Կասե՛մ ընկեր Էմմային,—նորից սպառնացի ես:

— Վա՛յ,—զարմացավ Յուրիկը:—Իսկ գիտե՞ս, թե ով է Լիպիկը...

— Ո՞վ է,—այս անգամ էլ վարանեցի ես:

— «Գանձերի կղզու» ծովահեն Ջոն Սիլվերին հիշո՞ւմ ես,—քմծիծաղ տվեց Յուրիկը:

— Հիշում եմ,—գլխով արի ես,—հետո՞ ինչ:

— Էդքան բան,—շշնջաց Յուրիկը:—Ոնց ուզում ես հասկացիր...

Իսկ նա՝ Լիպիկի եղբայրը, միայն աչքերն էր հառել վրաս...

Դասարանը քարացել էր: Ես հասկացա այսպես. երևի այդ Լիպիկը ծովահեն Ջոն Սիլվերի նման մի ավազակ է...

Հնչեց դասի զանգը...

***

Եվ ես, իհարկե, ոչինչ էլ չասացի ընկեր Էմմային, որովհետև, նախ՝ իմ ուղեղի մեջ էլ մտել էր այն միտքը, որ նրա դեմ խաբարբըզանություն անողի վերջը վատ է լինում և հետո՝ Յուրիկի ակնարկած «Գանձերի կղզու» այդ Ջոն Սիլվերը... Նա երևի կռահում էր մտքերս, որովհետև, ճիշտ է, Համիկի մազերից այլևս չքաշեց, բայց ավելի հաճախ էր խաղողի չանչերով ռմբակոծում ինձ. խաղողն ուտում էր, չանչը՝ շըլը՜մփ, երեսիս, շըլը՜մփ, երեսիս: Իսկ աղջիկներն էլ ծիծաղում էին, էլի ծիծաղում:

Համիկի դեպքից հետո Գագիկն այլևս չէր ծիծաղում վրաս, ընդհակառակը, նրա աչքերում էլ երբեմն խորհրդավոր կայծեր էի նկատում, բայց հիմա դա չէր մխիթարում ինձ: Համբերությանս բաժակը նորից էր լցվել, և որոշեցի, ինչ ուզում է լինի, հայտնել ընկեր Էմմային: Բայց հիմա էլ, ամեն անգամ, հենց որ հանդիպում էի մեր ջոկատավարուհուն, հիշում էի Ջոն Սիլվերին և լռում:

Սկսեցի գիշերները խառը երազներ տեսնել: Մի օր էլ երազումս տեսա, իբր թե, գանձերի տեղը հայտնում եմ Ջոն Սիլվերի հակառակորդներին, իսկ նա իր հենափայտով հարվածում էր գանգիս...

— Վա՜խ, գանգս, քեռի՜ Ջոն,—գոռացի ու վեր թռա:

Հայրս, մայրս և տատիկս վազեցին սենյակս: Մայրս այնպես էր վախեցել, որ չէր կարողանում խոսել:

— Ի՞նչ պատահեց քեզ,—հարցրեց հայրս:

— Ո՞վ խփեց գանգիդ,—ասաց տատս:

— Քեռի Ջոնը, տատիկ:

— Քեռի Ջոնն ո՞վ է,—զարմացավ տատս:

— «Գանձերի կղզին» գրքի ծովահենը,—ասացի ես:

Տատս հուսահատ վարկեց ծնկներին ու հանդիմանանքով դիմեց ծնողներիս.

— Ես ձեզ ասում եմ, որ մի՛ թողեք երեխային՝ գիրք կարդա...

Երբ ծնողներս և տատիկս գնացին իրենց սենյակները, ես արդեն հաստատ որոշել էի, որ վաղն ամեն բան պատմելու եմ ընկեր Էմմային: Ինչ լինելու է, թող լինի... Թող վատ լինի վերջս... Եվ փակեցի աչքերս:

Բայց նորից Ջոն Սիլվերի ավազակները հարձակվում էին վրաս... Ու երազիս մեջ մտածում էի. «Հո սրանից էլ վատ չի՞ լինելու»...



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

***

Առավոտյան դժվարությամբ արթնացա: Շտապ հագնվեցի և առանց ուտելու վազեցի դպրոց: Ուշացել էի: Բաց արեցի դասարանի դուռը, և ի՞նչ...

Ընկեր Էմման՝ մեր ջոկատավարուհին, խիստ նկատողություն էր անում Լիպիկի եղբորը, իսկ այդ Լիպիկի եղբայրն էլ, որն այնքա՜ն սարսափ էր տարածել մեր դասարանում, տզզում էր աղջկա նման: Յուրիկը կծկըվել էր անկյունում: Տղաներն ու աղջիկներն էլ ծիծաղում էին նրա վրա:

Մոտեցա Համիկին և հարցրեցի, թե ինչ է եղել: Նա ասաց, որ ամեն բան պատմել է ընկեր Էմմային:

Մեր ջոկատավարուհին դիմեց ինձ.

— Իսկ դու ինչո՞ւ էիր լռել:

— Չգիտեմ, ընկեր Էմմա,—հառաչեցի ես:—Բոլորն ասում էին, որ նա Լիպիկի եղբայրն է...

Մեր ջոկատավարուհին ավելի շեղացրեց իր շեկ հոնքերը.

— «Լիպիկի եղբա՜յրն է», «Լիպիկի եղբա՜յրն է»...—Եվ հայտարարեց, որ ոչ մի Լիպիկ էլ գոյություն չունի և որ այդ բոլորը Յուրիկի հորինած հեքիաթներն են միայն:

Ուրեմն «Լիպիկը» հենց ինքը Յուրիկն էր...

Պատկերացնու՞մ եք...

Հետո մեր ջոկատավարուհին հարցրեց մեզ.

— Իսկ ինչպե՞ս էիք պատկերացնում դուք այդ «Լի՛-պի՛-կի՛ն»:

Բոլորս շրջվեցինք դեպի Յուրիկը, որը մրթմրթում էր քթի տակ: Այդպես է նա. հենց որ նեղն է ընկնում, մրթմրթում է մեղավոր արջի քոթոթի նման:

— Դո՛ւ պատասխանիր,—դիմեց ինձ ընկեր Էմման:—Դե, ինչպե՞ս էիր պատկերացնում դու այդ «Լի՛-պի՛-կի՛ն»:

Դե, ի՞նչ պատասխանեի: Նորից Համիկը պատմեց ամեն բան:

Դասարանը թնդաց: Այս անգամ մեր ջոկատավարուհին էլ ծիծաղեց:

Համիկն էլ էր ծիծաղում...

Իսկ իմ ծիծաղը բոլորովին էլ չէր գալիս:

Այնպե՜ս էի հիասթափվել ինձանից...



# Երկնագույն ուլունքը

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ

## ՎԵՐՋԱՊԵՍ ԱՅԳԻ ՀԱՍԱՆ

— Հասա՜նք,—ուրախ բացականչեց Կարոլինկան, երբ կարմիր ավտոմեքենան կանգ առավ այգու դարպասի մոտ։

Լավ էր, որ նրանք ժամանակին տեղ հասան։ Այգու աշխատակիցներից երկուսը հսկայական բանալիներով, ուր որ է, պիտի փակեին դարպասը։

— Ճար չկա, Կարոլինկա, դու պետք է մեզ նորից տեսանելի դարձնես,— ասաց Պետրիկը։

— Ափսո՜ս,— տխուր հառաչեց Պրեզիդենտը։

— Ուրիշ ելք չկա, պան Պրեզիդենտ, - մեղմորեն համոզում էր նրան Կարոլինկան։ — Արդեն եկել է ժամանակը, որպեսզի դուք գործի դնեք ձեր հեղինակությունը և թույլ չտաք փակեն դարպասները։ Չէ՞ որ նրանք անտեսանելի մարդու հրամանը չեն կատարի... Տեսանելի՛ դարձրու մեզ, սիրելի հուլունք...

Եվ հենց նույն պահին նրանք ցնծության վայրենի աղմուկ-աղաղակ լսեցին։ Այդ նրանց բակի երեխաներն էին ողջունում՝ Կարոլինկային և Պետրիկին։

— Կարոլի՜նկա, Պետրի՜կ, ինչ լավ է, որ դուք էլ եք այստեղ։ Օգնեցե՛ք մեզ մի բան անել, որպեսզի այգին չփակեն։

— Մենք արդեն մտածել ենք.— հպարտ-հպարտ պատասխանեցին Պետրիկն ու Կարոլինկան։ — Ինքը՝ քաղաքի պան Պրեզիդենտն է եկել այս գործով անձամբ զբաղվելու։ Ահա նա՝ քաղաքի պան Պրեզիդենտը, սա էլ նրա կարմիր ավտոմեքենան է։

— Թույլ տվեք ներկայանալ և շնորհակալություն հայտնել մեր թաղի բոլոր երեխաների կողմից,—անհապաղ, շատ հանդիսավոր ասաց Լեշեկը։

Ախ, այդ Լեշեկը, նա միշտ այդպես է՝ գիտե, թե ինչպես պետք է անել, որ և՛ հանդիսավոր լինի, և՛ սիրալիր։

— Շատ հաճելի է,—պատասխանեց Պրեզիդենտը և սեղմեց Լեշեկի ձեռքը։ Իսկ հետո դարձավ դեպի այգու աշխատակիցը և շատ մեղմորեն ասաց.

— Խնդրում եմ, թողեք այգու դռները բաց մնան։ Այդ մասին ես գրավոր ձևով հատուկ որոշում կհրապարակեմ։

— Լսում եմ, պան Պրեզիդենտ,— և աշխատակիցը, խոնարհաբար գլուխ տալով, հեռացավ։

— Ես էլի ինչ պետք է անեմ,— հարցրեց Պրեզիդենտը Պետրիկին։

— Ես կարծում եմ, որ դուք պետք է ավելի մոտիկից ծանոթանաք այգուն,— խորհուրդ տվեց Պետրիկը։ — Դուք միայն տեսեք, թե ինչ հիանալի այգի է...

— Հիանալի՞ է, ասում ես,— հարցրեց Պրեզի-

---

Սկիզբը՝ նախորդ համարներում։

## ԻՆՉՈ՞Ւ Է ՇԼԴԻԿԸ ԽԱՌՆՈՒՄ ՀԵՏՔԵՐԸ

ՌԱՖԻԿ ԲԱՂԻԿՅԱՆ

— Լսի՛ր, ո՞ւր ես վազում այդպես,—
Կտցարն ասաց Շլդիկին,—
Նենգ Աղվե՞սն է հետևում քեզ,
Թե՞ տեսել ես Գայլուկին։

— Ես փախչում եմ անվերջ այսպես,
Գազաններից ահարկու։
Կան թե չկան, բայց ի՞նչ գիտես,
Ջեն հետևում ինձ թաքուն։



— Զիմանալով ուր են նրանք,
Փախչում ես դու նրանցից։
Բայց ի՞նչ գիտես, գայլը անհագ
Չի՞ դուրս գա հենց դիմացից։



Նապաստակը տեղում կանգնեց.
— Ճիշտ որ, ո՞ւր եմ ես վազում,
Գուցե հիմա Գայլ կամ Աղվես
Այնտեղ ինձ են սպասում։



Ու ետ փախավ Շլդիկը խեղճ,
Բայց մտածեց նա նորից.
— Գուցե Կտցարը ինձ խաբեց,
Ու վտանգ կա այս կողմից։





դենտը մտախոհ։ — Հը՜մ... Ինչ կա որ, եկեք զբոսնենք։

Եվ հենց այն պահին, երբ Կարոլինկան ու Պետրիկը Պրեզիդենտին ամեն տեսակ հարգանք մատուցելով՝ ուղեկցում էին դեպի այգու դուռը, մի խղճալի մռնչոց լսվեց։

— Սա ի՞նչ բան է,—բոլորն էլ մի փոքր վախեցան, իսկ Յանյան քիչ էր մնում լաց լիներ։

Պետրիկն ու Կարոլինկան իսկույն գլխի ընկան, թե ինչումն է բանը։

— Մենք մոռացե՜լ ենք մեր առյուծներին,— բացականչեցին նրանք և նետվեցին դեպի մեքենան։

Այնտեղից դուրս թռան առյուծները։ Նրանք մի քիչ ճզմվել էին, բայց երջանկությունից ուղղակի փայլում էին։

— Մի՛ վախեցեք,—ճչացին Պետրիկն ու Կարոլինկան։ — Սրանք իսկական առյուծներ չեն։ Հիմա կտեսնեք, թե նրանք ինչ լավն են։ Եվ հետո, նրանք այնքան էլ մեծ չեն։

— Իսկ կարելի՞ է նրանց շոյել,— սիրտ առավ Դորոտան, որ միշտ աչքի էր ընկնում իր համարձակությամբ։

— Դե, իհարկե,— քաջալերեց Կարոլինկան։ — Նրանք իսկապես շատ սիրալիր են։ -- Եվ որպեսզի հաստատի իր ասածը, Կարոլինկան հերթով համբուրեց նրանց գզգզված բաշերը։

Հետո բոլորը միասին մտան այգի։

Այգում մի չտեսնված ուրախություն տիրեց։ Երեխաները սկսեցին պտտվել կարուսելի և «հրակայի բայլերի» վրա։ Ճոճանակները վեր էին խոյանում, թվում էր, ուր որ է, կհասնեն ամպերին։ Բլրակը շարունակ զբաղված էր, բայց ոչ մեկը կռիվ չէր անում։ Այո, ոչ մի աղմուկ-աղաղակ։ Բոլորը համբերությամբ սպասում էին իրենց հերթին։ Կարոլինկան կանգնած էր Ալգայից հետո, իսկ ամենավերջում կանգնած էր ինքը՝ քաղաքի պան Պրեզիդենտը։ Նա ոչ մի անգամ բաց չթողեց իր հերթը։ Այգին նրան շատ էր դուր եկել։ Հապա կարուսելի վրա քանի՜ անգամ պտտվեց։ Իբրև պատվավոր հյուր նրան հաջողվեց մի փոքր ավելի պտտվել, քան մյուսներին։ Բայց նա արժանի էր դրան։ Այդպես որոշեցին բոլորը։

— Զո՜ւր է, զո՜ւր է նա ցանկացել
Պահել հետքերն իր ծածուկ.
Դժվար բան չէ նրան գտնել,
Իսկ գնդակն է իմ դիպուկ...

Ու մեկ առաջ, մեկ ետ վազեց,
Մեկ աջ, մեկ ձախ և հանկարծ,
Գորշ Գայլուկը դեմը ցցվեց,
Ու փախավ նա սարսափած։

Ու փախչում է մինչև հիմա
Գազաններից սոսկալի,
Բայց երբ հիշում է ակամա
Խորհուրդը այն կտցարի,—

Նետվում է ետ, առաջ կրկին,
Մեկ աջ, մեկ ձախ, և հանկարծ,
Հիշելով այս գորշ Գայլուկին,
Սլանում է վախեցած։

Իսկ հին որսորդը նայելով
Հետքերին այն Շլդիկի,
Տեր ճակատը կնճռոտելով,
Ասում է իր շնիկին.

## ԼՈՒՍԱԲԱՑ Է

*ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ*

Ջալոն աշխույժ ելավ բակից.
Դունչը թաց է։
Տիտը թռավ թփի տակից.
Լուսաբաց է։
Այգու դուռը կամաց ճռռաց.
Ճամփան բաց է։
Թթենու տակ թուխսը կռռաց.
Լուսաբաց է։
Հանդվոր մորս հին գոգնոցում
Լավաշ հաց է. .
Ժայռը կորավ կարմիր բոցում.
Լուսաբաց է։

Հետո Պրեզիդենտը նայեց ժամացույցին և հիշեց, որ հիմա սկսվում է քաղաքային խորհրդի նիստը:

— Պետք է այնտեղ մեկընդմիշտ լուծել ձեր այգու հարցը,— ասաց նա հրաժեշտ տալով: — Ինչ գնով էլ լինի, ես պետք է համոզեմ խորհրդականներին, որ սա չափազանց կարևոր այգի է: Իսկ ուստարանը թող մի փոքր այն կողմ կառուցեն: Ճիշտ է, չէ՞:

— Ճի՜շտ է,— համաձայնեցին բոլորը:

— Դե, ուրեմն, մնացեք բարով և մի լավ զվարճացեք: — Եվ Պրեզիդենտը, հենց այն է, ուզում էր սեղմել ստարտերը, բայց հանկարծ, ասես ինչ-որ կարևոր բան հիշելով, դուրս եկավ կարմիր մեքենայից:

— Ո՛չ, ո՛չ,— ասաց նա: — Այս ավտոմեքենան էլ թող ձեզ մնա: Ես ուզում եմ, որ այս մեքենայով երեխաները զբոսնեն և ուրախանան:

Նա գրկեց փոքրիկ տղաներից մեկին և նստեցրեց ղեկի մոտ, իսկ նրա կողքին տեղավորեց Յանյային:

— Ի՞նչ կասես Կարոլինկա,— հարցրեց նա,— դու, ես և Պետրիկը, իհարկե, համաձայն ենք, որ որոշ բաներ այստեղ այնպես արտասովոր և կախարդված չեն լինի, ինչպիսին որ մեզ թվում են այս րոպեին: Բայց ես կուզենայի, որ դրանք գոնե մի քիչ կախարդված և մի քիչ էլ արտասովոր մնային: Հնարավո՞ր բան է այդ, ի՞նչ ես կարծում:

— Կարծում եմ, որ հնարավոր է,— պատասխանեց Կարոլինկան մի փոքր մտածելուց հետո:

— Դե, ուրեմն լավ է,— ուրախացավ Պրեզիդենտը: Այդ դեպքում, իբրև հիշատակ մեր արկածների, մի փոքր կախարդված առյուծներն ու այս մի փոքր կախարդված մեքենան թող մնան այստեղ: Մնաք բարով:

Գլխարկը հանելով, նա գլուխ տվեց: Բայց, ճիշտն ասած, նրա կողքին արդեն ոչ մի երեխա չէր մնացել, բոլորը վազում էին կարմիր ավտոմեքենայի հետևից, որը հանկարծ փոքրացել և սլանում էր այգու ծառուղիներով: Իսկ ղեկի մոտ հպարտ-հպարտ նստած էր հարևան բակի փոքրիկ տղան: Միայն Պետրիկն ու Կարոլինկան էին մնացել այգու դարպասի մոտ կանգնած:

— Մնաք բարով,—կրկնեց քաղաքի Պրեզիդենտը: Եվ որովհետև ավտոբուսը լիքն էր ուղևորներով, նա մնաց աստիճանների վրա կանգնած: Դառնալով Կարոլինկայի և Պետրիկի կողմը, նա մի անգամ էլ հանեց գլխարկը և մտերմաբար ժպտաց նրանց: Երեխաներն ի պատասխան ձեռքով արին:

## ՄԻ՛ ԳՈՒՆԱՏՎԻՐ, ՀՈՒԼՈՒՆՔ

Նրանք այսպես կանգնել և նայում էին հեռացող ավտոբուսի հետևից:

— Լավ, գնանք,— անտրամադիր ասաց Պետրիկը: Տղան բռնեց Կարոլինկայի ձեռքը, և նրանք տուն վազեցին:

Հանկարծ Կարոլինկան կանգ առավ:



— Ի՞նչ պատահեց քեզ: Հոգնա՞ծ ես,— անհանգստացավ Պետրիկը:

— Ո՛չ, ո՛չ,— գլուխը տարուբերեց Կարոլինկան: — Լսի՛ր, մի՞թե այն, ինչ տեղի ունեցավ այսօր, իրոք եղել է: Մի՞թե առյուծները...

Բայց Պետրիկը պատասխանելու ժամանակ չունեցավ, որովհետև այդ պահին նրանք հանդիպեցին Կարոլինկայի հայրիկին: Նա ձեռքի թերթն ուրախ-ուրախ թափահարելով տուն էր շտապում:

— Կարոլինկա, դու այստեղ ի՞նչ ես անում: Ագատա մորաքույրը վաղուց մեզ է սպասում... Այդ դո՞ւ ես, Պետրիկ: Գուցե կգաս մեզ մոտ ճաշելո՞ւ.

— Շնորհակալություն, կգամ, միայն թե ճաշից հետո,— և Պետրիկը քաղաքավարի գլուխ տվեց:

— Արի,— հրավիրեց Կարոլինկայի հայրիկը:— Այսօրվա թերթերում մի բան կա, որ, երևի, ձեզ էլ կհետաքրքրի:

— Ի՞նչ,— խմբապես անհամբերությամբ երեխաները:

— Դուք միայն վերնագրերը նայեք. «Վարշավայից մանկական այգին մշտապես բաց կլինի», «Ինքը՝ քաղաքի Պրեզիդենտն անձամբ այցելեց Ծաղիկների փողոցի այգին», «Առյուծները մեր քաղաքի փողոցներում», «Հիվանդացե՞լ են արդյոք փղերը», «Անհայտ կենդանին՝ առյուծների վանդակում»: Սրանք իրոք այնքան էլ սովորական բաներ չեն, ճիշտ չէ՞, երեխաներ:

— Այո,— շշնջացին Պետրիկն ու Կարոլինկան:

Ագատա մորաքույրը սպասում էր, որ բոլորը ճաշի գան, նա արդեն գցել էր սեղանը, չնայած դա Կարոլինկայի պարտականությունների մեջ էր մտնում:

— Իսկույն լվա՛ ձեռքերդ,— սովորականի պես ասաց նա Կարոլինկային:— Պատկերացնում եմ, թե ինչպես են սևացել... Ինչքան ժամանակ է թրև ես գալիս: Ո՞ւր էիր կորել, Կարոլինկա:

— Կինո...— սկսեց Կարոլինկան, բայց իսկույն խոսքը փոխեց,— այսինքն այգում էինք... այգում:— Եվ հետագա հարցուփորձից խուսափելու համար շտապեց լոգարան:

Իրոք որ ձեռքերը շատ էին կեղտոտ... Իսկ եթե ճիշտ ասենք, պարզապես սև էին: Աջ ձեռքը ճանկռված էր: Ինչի՞ց էր ճանկռվել՝ անհայտ էր: Երևի առյուծներից մեկն՝ էր ճանկել կամ, հավանական էր, որ դա Ֆիլոմենայի արածը լիներ:

Իսկ ինչպե՞ս է իրեն զգում հուլունքը:

Կարոլինկան շտապ-շտապ սրբեց ձեռքերը և գրպանից հանեց հուլունքի տուփը: Բացեց զգուշորեն: Ա՜խ, սիրելի հուլունք:

Ճիշտ է, նա դեռ լրիվ թափանցիկ չէր, դեռ մի փոքր երկնագույն ցոլք կար նրա մեջ, բայց արդյո՞ք նա երկար կդիմանար: Ամենաշատը՝ էլի երկու ցանկության չափ: Կամ գուցե հազիվ-հազ մե՞կ ցանկություն կարողանա կատարել. մի մեծ կարևոր ցանկություն...

— Մի՛ գունատվիր, հուլունք,— շշուկով խնդրեց Կարոլինկան, բայց Ագատա մորաքույրը արդեն թակում էր լոգարանի դուռը:

— Կարոլինկա, եկ ճաշելու:

— Հիմա գալի՜ս եմ,— գոչեց Կարոլինկան և որոշեց, որ ինքը պետք է շատ, շատ զգույշ լինի, որովհետև դա, անկասկած, կլինի նրա վերջին ցանկությունը, որ ի վիճակի կլինի իրագործել հուլունքը: «Պետք է առաջուց մի լավ միտք անեմ, թե ինչ եմ ուզում,— վճռեց Կարոլինկան:— Գուցե ունիվերմագում տեսածս տիկնիկը կամ երևի...»

— Կարոլինկա, ապուրը սառչում է:

Օհո, Ագատա մորաքույրն արդեն սկսում է բարկանալ: Նա չի սիրում, երբ ճաշից ուշանում են:

— Հիմա՜, մորաքո՛ւյր, գալի՜ս եմ:

Բոլորը սեղանի շուրջը նստած սպասում են Կարոլինկային:

— Կարոլինկա, կե՛ր: Քեզ ի՞նչ է պատահել: Ախորժա՞կ չունես,— զարմացավ մայրիկը:— Գուցե վա՞տ ես զգում: Ինձ թվում է, որ Կարոլինկայի դեմքը կարմրել է: Երևի ջերմություն ունի:

— Է՜, է՜, ի՞նչ ես ասում,— հանգստացրեց նրան հայրիկը:— Ոչինչ՝ չկա: Պարզապես այսօր Պետրիկի հետ այգում շատ է վազվզել:

— Հա, լսել եմ, թե իբր քաղաքի Պրեզիդենտն այսօր այգի է եկել, որ նա թույլ չի տվել այգին փակեն և որ ընդհանրապես այնտեղ շատ ու շատ հետաքրքրական բաներ են պատահել:

— Այո,— հաստատեց Կարոլինկայի հայրիկը: — Նույնիսկ թերթերն են գրում: Իսկ այդ տարօրինակ գազանի մասին դու դեռ չե՞ս կարդացել: Լավ կլինի հենց այս կիրակի կենդանաբանական այգի գնանք և տեսնենք այդ գազանին: Չէ՞, Կարոլինկա: Դու սիրո՞ւմ ես կենդանաբանական այգի գնալ:

— Ո-ո-ո՜-չ, հիմա արդեն այնքան էլ չեմ սիրում,— կմկմաց Կարոլինկան:

Հենց որ Կարոլինկայի մտքով անցավ, որ ինքը կարող է էլի հանդիպել Ֆիլոմենային, թեկուզ և նա լինի վանդակում փակված, նա դողաց սարսափից: Եվ Կարոլինկան տեղնուտեղը վճռեց, որ ինչ էլ լինի, կենդանաբանական այգի չի գնա, քանի դեռ Ֆիլոմենան այնտեղ է: Գուցե շուտով նրան տանեն այնտեղից: Գուցե փոխանակեն մի լավ արջուկի, կամ, ասենք, ընձուղտի հետ:

— Կե՛ր, Կարոլինկա,— նորից ասաց մայրիկը: — Տե՛ս, բոլորն արդեն կերել են և քեզ են սպասում: Կոմպոտ ուզո՞ւմ ես:

Կարոլինկան գլուխը բացասաբար շարժեց:

— Ոչինչ չեմ հասկանում,— տարակուսեց մայրիկը:— Մեկ ուզում ես, մեկ չես ուզում... Չեմ հասկանում, աղջիկս, թե ինչ է կատարվում քեզ հետ:

Եթե մայրիկը բոլորն իմանար, իսկի չէր զարմանա: Ինչպե՞ս կարող էր Կարոլինկան ասել, թե «կոմպոտ եմ ուզում», երբ նա անզգուշաբար ձեռքը տարել՝էր գրպանը և փնտրում էր հուլունքը: Իսկ եթե հանկարծ հուլունքն ընկներ ձեռքից և նա շփոթվեր ու չկարողանար նորից գրպանը գցել: Իսկ մի՞թե կարելի է հուլունքը ձեռքին կոմպոտ խնդրել, պարզ է, որ ոչ:

Դեռ լավ է, որ նրան հաջողվեց հուլունքը թաքցնել գրպանում...

Պետք է անպայման խոսել Պետրիկի հետ:

(Շարունակելի)







Տաս օր շարունակ Երևանի օպերայի և բալետի թատրոնում, Հայֆիլհարմոնիայի համերգային մեծ դահլիճում, ինչպես նաև մյուս համերգասրահներում ու կուլտուրայի օջախներում, հնչում էին միայն ռուսական երգեր ու երաժշտություն։ Եղբայրական մեծ ժողովրդի հարազատ մեղեդիները դուրս հորդեցին Արարատյան հարթավայրից ու լայն արձագանք գտան նաև Շիրակում, Լոռու և Զանգեզուրի լեռներում։ Ամենուրեք մեր ժողովուրդը ցնծությամբ էր ընդունում ռուսական արվեստի մեծանուն ներկայացուցիչներին։

*Լուսանկարներում—1. Մայրաքաղաքի պիոներները ողջունում են թանկագին հյուրերին։ 2. Ելույթ է ունենում փառաբանված «Բերյոզկա» անսամբլը։ 3. Երգում է ՌՍՖՍՀ ժողովրդական արտիստուհի Գալինա Վիշնևսկայան, դաշնամուրի մոտ է ՌՍՖՍՀ ժողովրդական արտիստ, թավջութակահար Մստիսլավ Ռոստրոպովիչը։ 4. Իր բալետային արվեստն է ցուցադրում ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Ռաիսա Ստրուչկովան։ 5. Աշխարհահռչակ կոմպոզիտոր Դմիտրի Շոստակովիչ։*



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԳԻՆՆ Է 2 ԿՈՊԵԿ

ՕՐԳԱՆ
Հ. Լ. Կ. ԵՒ. Մ. ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ
ԳՈՐԾՈՂ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲԱՈՒՐՈՅԻ
ՇԱԲԱԹ

№ 1 (7) ՇԱԲԱԹ, 24 ՀՈԿՏ...

ԳՅՈՒՂԱԿԱՆ ԴՊՐՈՑԸ ՑԵՎ ՊԻՈՆ...

...ԿՈՄԻՍԱՐ ...ԽՈՐՀՐԴԻ ՆՈՐ ՆԱ... Կ. ՅԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎԸ

Պիոներ կանչ

ՕՐԳԱՆ ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ

Կաթիլներից գոյանում են ջրերը, որ առվակի տեսք ստացած՝ գիլ-գլոր վազում են դեպի գետակները, գետերը, և հետո այդ գետերից մեկը շառաչով ցած է թափվում ժայռերի բարձունքից՝ գեղեցիկ ծիածան կապելով արևի շողերի ներքո...

Սկզբում այդ թերթը չկար...

Հետո ծնվեց: բայց՝ սահմանափակ տպաքանակով, մի քանի կաթի՛լ...

Տարիների հետ նրա տպաքանակը մեծացա՛վ, մեծացա՛վ, առվի խենթ վազքից նա գոչ-գոչ գետակի ընթացքն ստացավ ու ապա լեռնային շառաչուն մի գետի պես ջրվեժվեց բարձրից մեր աշխարհի ամեն մի անկյունում, ամեն մի պատանու սիրտում ու մտքում, ծիածանվառ գեղեցիկ մի կամարով իրար շաղկապելով անցյալը, ներկան ու ապագան, երկիրն ու երկինքը, ծաղիկների ու մանուկների ծաղիկ-մրտերը, նրանց երկինքաչիկներն ու երկնի բիլ երազները, պարզապես բոլոր նրանց, ովքեր մեկ հրաշալի բառով կոչվում են պիոներ, իսկ ինքը՝ բոլորին միմյանց կապողն էլ հայտնի է հրաշալի մի անունով՝ «Պիոներ կանչ»...

«Պիոներ կանչ»... Կա՞ մեկը մեր հանրապետության որևէ քաղաքում կամ կայծակների ու ոռոտների հետ զրույցի բռնված ամենահեռավոր լեռնային գյուղում, որ կարդացած չլինի «Պիոներ կանչ», որին ուղեկցած չլինի այդ փոքրիկ, բայց մեծ իմաստություններ իր մեջ պարփակող թերթը:

Թերթ-ուսուցիչը, թերթ-խորհրդատուն, թերթ-բարեկամը, ընկերը...

Կարմրավզկապ, առույգ մի պիոներ էր նա, երբ ծնվեց ուղիղ 40 տարի առաջ:

Այսօր 40-ամյա պիոներ է և դարձյալ՝ առույգ, աշխույժ, պատանեկան վառ երազներով ու անափ խինդով, ժպիտներով լեցուն:

Երբեք, երբեք չի ծերանա նա՝ այդ հրաշալի սևագանգուր մանուկը: Միշտ կմնա ժպտադեմ, թովչուն պիոներ, բայց տարիների հետ ավելի իմաստնանալով՝ լայնախոհ ու իմաստուն ուսուցիչ կմնա միաժամանակ: Ու բոլորը, բոլոր սերունդները...



*«Պիոներ կանչի» խմբագրությունը հաճախակի հանդիպումներ է կազմակերպում անվանի մարդկանց հետ: Այս անգամ նրանց հյուրն է փառաբանված զորավար ՀՈՎՀԱՆՆԵՍ ԲԱՂՐԱՄՅԱՆԸ:*

# ՔԱՌԱՍՆԱՄՅԱ

յանքի սանդուղքներով որքան վեր ելնեն, հասնեն թեկուզ անհաս աստղերին, երախտապարտ ու ազնիվ, մաքուր ու ջինջ մի զգացմունքով կհիշեն իրենց թերթը՝ «Պիոներ կանչը», որ զրնգուն, զիլ, անխարդախ ձայնով կանչել է իրենց, տարել դեպի լավը, վսեմը, գեղեցիկը, տարել ծանոթ ու անծանոթ ուղիներով՝ միշտ վեր ու միշտ առաջ:

Եվ դրա համար սերունդները միշտ կասեն նրան՝ շնորհակալությո՜ւն, «Պիոներ կա՛նչ»...

Չէ՞ որ այդ խոսքերն են շշնջում նրան այսօր շա՜տ ու շատ անվանի մարդիկ՝ գրողներ ու երգահաններ, գիտնականներ ու արտիստներ, նկարիչներ ու մանկավարժներ, ռազմիկներ ու բանվորներ, հանրային դաշտերի հերոսներ ու խիզախ օդաչուներ...

Որտե՞ղ են առաջին անգամ տպագրվել բանաստեղծներ Սիլվա Կապուտիկյանն ու Գևորգ Էմինը, Հրաչյա Հովհաննիսյանն ու Վահագն Դավթյանը. «Պիոներ կանչում»:

Ո՞ր թերթի միջոցով են իրենց անդրանիկ երգերը մարդկանց ներկայացրել երգահաններ Առնո Բաբաջանյանը, Էդվարդ Միրզոյանը, Ալեքսանդր Հարությունյանը. «Պիոներ կանչի»...

Ո՞ր թերթն է հոգածորեն հետևել, խրախուսել այսօր արդեն մեծահռչակ գիտնական Սերգեյ Մերգելյանի առաջին քայլերը, ոգեշնչել միջազգային մրցանակակիր՝ տաղանդավոր երաժիշտ Ժան Տեր-Մերկերյանին և շատ այլ նշանավոր մարդկանց. «Պիոներ կանչը»...

Այստեղ են աճել հանրապետության սահմաններից էլ դուրս լայն ճանաչման արժանացած նկարիչներ Էդվարդ Իսաբեկյանն ու Գրիգոր Խանջյանը, հասարակական-պետական ականավոր

# ՊԱՏԱՆԻՆ

շատ գործիչներ, անվանի դասախոսներ, ժուռնալիստներ...

Կազմակերպիչ է եղել թերթը, նախաձեռնող: Չկա մի խոշոր միջոցառում, որին ակտիվորեն մասնակցած չլինի նա, իր կրակոտ խոսքով խանդավառած և դեպի գործ մղած չլինի պիոներներին:

Ահա տերևների սոսափյունով երգում է մայրաքաղաքի լավագույն զբոսայգիներից մեկը՝ Կիրովի անվան կանաչախիտ այգին. պիոներներն են ստեղծել այդ այգին, աճեցրել նրա տունկերը, որ այսօր բարձրակատար, զովասուն ծառեր են դարձել:

300 տրանսֆորմատորներ: Դրանք հանրապետության պիոներների հավաքած մետաղի ջարդոնով են պատրաստել Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի բանվորները: Պիոներները տրանսֆորմատորները նվիրեցին սիրելի հայրենիքին:

Նրանք խաղաղության աղավնիներ բազմացրին Լենինի անունը կրող հրապարակի համար, որ այսօր թևածում են նրանք:

Այդպես թևածում է նաև «Ծիծեռնակը» թերթի էջերում, հայրենակարոտ «Ծիծեռնակը», որ լուրեր է բերում սփյուռքի հայ մանուկներից, վաղուց իր տաքուկ բույնն է հյուսել թերթի հյուրընկալ հարկի տակ:

Որքա՜ն բազմաբնույթ ու բազմաբովանդակ օլիմպիադաներ, մրցույթներ է կազմակերպել թերթը, որքա՜ն տաղանդներ հայտնաբերել:

Վերջերս էր, որ այդպիսի մի լավ նախաձեռնություն հանդես բերեց թերթը: «Ի՞նչ գիտես դու տիեզերքի մասին» մրցանակաբաշխությանը մասնակցեցին հազարավոր պիոներներ ու դպրոցականներ:

Նա միշտ պիոներների հետ է: Միշտ նրանց վզկապածուփ ծովում՝ շրջապատված նրանց ու պիոներական անցած սերունդների անթառամ սիրով:

Ու թեկուզ էլի քառասուն տարի անցնի, թեկուզ հարյուր տարեկան դառնա «Պիոներ կանչը», դառնա 500, 1000, 5000 տարեկան, դարձյալ կմնա նույն զանգահեր հրաշալի պատանին, որի պարզ ճակատը բոլո՜րը, բոլորը կհամբուրեն ու շնորհակալությամբ կասեն.

— Ապրե՜ս, զորանա՜ս...

ՂԱՐԻԲ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ



Փոստատարին այսպես սպասում են, դիմավորում ամենուրեք:

Լուսանկարները՝ ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ

# ՓԱՌՔԻ ՆԱԽԵՐԳԱՆՔԸ

Գիշերային մեղմ քամին ճյուղից-ճյուղ անցնելով՝ խշշացնում էր թթենին, սահում էր ցած, խառնվում ծղրիդների ճռռոցին, առվակի երգին էր ականջ դնում, հետո ներս էր խցկվում բաց պատուհանից, բարուրում քնած փոքրիկին և այդ ամենը թևին առնելով՝ թռչում էր հեռու՜-հեռու՜, դեպի երազների աշխարհը: Իսկ այնտեղ, ուր տեսիլքներն էին թագավորում, մարդիկ իրար խառնըված գոռում էին, գոչում: Մըրցապարեզում երկու ըմբիշներ, ինչպես հուժկու ցուլեր, գոտեմարտում էին: Նա հաղթում էր մեկին, հետո՝ մյուսին: Ամենաուժեղն անգամ ծնկում էր նրա առջև: Ուռաներն ու սուլոցները ավելի սաստիկ էին դառնում: Դեպի հաղթողն էին թռչում ծաղիկներ: Իսկ նա, այդ հսկան, ժպտում էր հաղթանակած և հազարավոր մարդկանց մեջ փընտրում մեկին:

— Հայրի՜կ, հայրի՜կ, ես այստեղ եմ,—ամբոխի միջից բղավում էր Գեղամը:

Հենց այդ ժամանակ էլ զնգաց արթնացնող ժամացույցը: Փոքրիկը նստեց անկողնում: Լույս էր: Նա դուրս նայեց բաց պատուհանից: Բայց երանելի երազները արդեն չքացել էին լուսաբացին, որպեսզի գիշերը նորից վերադառնան...

Ամեն երեկո էլ այդպես էր լինում: Հայրը պատմում էր իր կյանքից, հիշում երիտասարդ օրերը, սպորտային համառ պայքարն ու հաղթանակները: Հոր հուշերը ոգևորում էին նրան: Տղան քնում էր երազելով, որ ժամ առաջ մեծանա, դառնա ըմբիշ, հաղթի բոլորին:

— Գեղա՜մ, — կանչում էին դրսից:

Կարենն էր: Դուրս էր վազում: Այնտեղ կանաչով ներկված պարտեզն էր ու մեկ էլ՝ ստվերում դրված թենիսի սեղանը:

Գնդակը դիպչում էր սեղանին, կտկտոցով աջ ու ձախ թռչում: Երկու փոքրիկներ խաղում էին լարված, հաղթում էին, հաղթվում: Հետո պայուսակներն առած՝ դպրոց էին վազում:

— Ճաշից հետո կպատեմ, հայ-



րիկս էլ է խաղալու,—բաժանվելիս ասում էր Գեղամը:

Ճաշից հետո նորից էին հավաքվում ստվերում: Գեղամի հայրն էլ էր գալիս: Գնդակը նորից կտկտոցով թռչում էր դեսուդեն, ու վերսկսվում էր սպորտային պայքարը: Բայց, ինչպես միշտ, օրվա հերոսը մնում էր նա՝ փոքրիկ Գեղամը:

Մի անգամ էլ, երբ ամեն օրվա պես կանաչ սեղանը շրջապատված էր մեծերով ու փոքրերով, մի միջահասակ, սև գանգուրներով- երիտասարդ ձեռքը մտերմաբար դրեց նրա ուսին.

— Անունդ Գեղամ է, այդպես չէ՞.—Գեղամը հարցական նայեց նրան:—Իսկ ես ձեր հարևանի բարեկամն եմ,—ավելացրեց երիտասարդը:—Ես ուզում եմ իմանալ, թե սպորտի ինչ ձևով ես զբաղվում,—շարունակեց նա:

— Հայրս ասում է՝ դեռ փոքր ես, ըմբիշ դառնալու համար հարկավոր է պողպատի պես մկաններ ունենալ, իմը՝ տեսնու՞մ եք, ինչ բարակ են,—շիկնեց Գեղամը:

— Իսկ սեղանի թենի՞սը, չէ՞ որ այդ սպորտաձևի համար հենց բարակ մկաններ են պետք, այ, ինչպես քոնն է:

— Է՜հ, ես ուզում եմ իսկական մարզիկ դառնալ: Սեղանի թենիսն ինչ է որ, բոլորն էլ խաղում են, նույնիսկ՝ աղջիկները: Ա՜յ, ինձ ոչ ոք խաղալ չի սովորեցրել, բայց ես մեծերին էլ եմ հաղթում: Իսկ ըմբշամարտով չեմ կարող: Թևերիս մեջ կարծես ուժ չկա:

— Ասում ես մեծերի՞ն, որ այդպես է՝ արի խաղանք,—առաջարկեց երիտասարդ անծանոթը:

— Այս էլ ձեզ 21: Հիմա հավատացի՞ք,—վերջին գնդակը հարվածելով ուզեց պարծենալ Գեղամը: Բայց գնդակը անսպասելի ուժգնությամբ ետ դարձավ ու անշարժացավ տղայի դաշտում:

— Կարծեմ հարվածելու հերթը իմն է,—ասաց երիտասարդը:

— . . . 3—20, 4—20, 5—20: Հերթը Գեղամի՜նն է,— հուզված գոչեց Համլետը, որը դատավորի դեր էր կատարում, և շարունակեց հաշվել.—20—6, 20—7, 20—8...

Բոլորը զարմացել էին: Գեղամը շիկնած և քիչ էլ բարկացած՝ մեկ աջ էր ցատկում, մեկ՝ ձախ, առաջ, ետ, բայց իզուր: Գնդակը կայծակնային արագությամբ անցնում էր քթի առջևով կամ պտույտներ գործելով՝ դիպչում էր սեղանին և անշարժանում: Հաշիվը գնալով ավելանում էր:

— 18 — 20, 19 — 20, — լսվում էր Համլետի ձայնը, — վերջին գնդակը:

Գեղամիկը առաջին անգամ

զգաց պարտության դառնությունը:

— Այդ ու՞ր, սպասեցե՛ք. նորից ենք խաղալու,— արցունքները աչքերին, հեկեկոցը զսպելով՝ անծանոթին էր դիմում Գեղամը:

— Չեմ կարող: Ինձ սպասում են, եթե շատ ես ցանկանում ինձ հետ խաղալ, վաղը՝ դասերից հետո, ընկերներով եկեք «Սպարտակ» կամավոր սպորտընկերության դահլիճը: Ես ձեզ կսպասեմ կրկեսի մոտ:

— Գնա՞ց: Տեսա՞ք ոնց էր խաղում.— հիացած ասաց Կարենը:

— Այն էլ՝ երկու ձեռքով.— ավելացրեց Գևորգը:

Հաջորդ օրը, երբ կրկեսի մոտ հանդիպեցին, իմացան, որ այդ երիտասարդը հենց ինքը ռեսպուբլիկայի բազմակի չեմպիոն, սպորտի վարպետ Հարություն Հակոբյանն էր:

...Երեխաները բոլորը միասին ներս մտան մարզասրահ:

Անցավ մեկ տարի: Գեղամի համար կարծես աշխարհի երեսին սեղանի թենիսից բացի ուրիշ սպորտաձև գոյություն չուներ: Ըմբշամարտի մասին արդեն մոռացել էր: Նրա տարերքը փոքր ռակետի վարպետ դառնալն էր: Դրան էր ձգտում նաև հոգատար մարզիչը՝ փոքրիկի խորհրդատուն:

Օրերն անցնում էին աննկատ: Իսկ նա հասակ էր առնում. ավելի ու ավելի էր խորանում սպորտային տեխնիկայի յուրացման բարդ ու դժվարին գործում:

Եվ ահա հասավ մկրտության օրը: Գեղամն առաջին անգամ դուրս եկավ մրցության՝ նվաճելու Երևան քաղաքի չեմպիոնի կոչումը: Պայքարն ավարտվեց փայլուն հաղթանակով: Հետո դարձավ ռեսպուբլիկայի պատանի թենիսիստների մրցանակակիրը: Շուտով նա մեկնեց Բաքու: Եվ ուղիղ մեկ շաբաթ հետո կառամատույցում հավաքված ընկերներն ու հարազատները եկել էին դիմավորելու արդեն «Սպարտակ» կամավոր սպորտընկերության համամիութենական չեմպիոնին:

Կայարանում Գեղամիկը տեսավ արցունքակալած հոր աչքերը, գնծությամբ լցված Շողիկին, Նորիկին, Համլետին, Կարենին, բոլորին, բոլորին: Նրա փոքրիկ սիրտն էլ լցվեց երջանիկ հուզմունքով:

Տարիներն անցնում էին: Նա բազմիցս նվաճել էր ռեսպուբլիկայի չեմպիոնի տիտղոսը, առաջնություն էր շահել միջազգային և համամիութենական սպորտային մրցություններում: Հաղթանակները շատ էին, բայց տարիքը դեռ 13-ից չէր անցել:

Գեղամը չէր հպարտանում իր հաջողություններով: Ընդհակառակը, նրա ականջում անընդհատ հնչում էր մարզիչ Հարություն Հակոբյանի խոսքերը. «Հաղթանակի հասնելու համար անհրաժեշտ է ունենալ երկաթյա կամք, պետք է մարզվել համառորեն»:

Եկավ 1963 թվականի ամառը: Տասնչորսամյա Գեղամ Վարդանյանը մեկնեց Մոսկվա՝ մասնակցելու Սովետական Միության ժողովուրդների 3-րդ սպարտակիադային և նվաճեց սպորտի վարպետի պատվավոր կոչումը: Իսկ հետո: Հետո... Բաքու, Թբիլիսի, Կիև, Խարկով, Լենինգրադ, քաղաքներ, որոնք իրենց դռները լայն բաց էին արել հաղթանակից-հաղթանակ թռչող պատանի մարզիկի առջև: Ամենուր նա մրցում էր անվանի սպորտսմենների, երկրի և ռեսպուբլիկաների չեմպիոնների հետ և միշտ էլ բարձրանում էր հաղթողի պատվանդանի առաջին աստիճանին: Իսկ 1964 թվականին երկրի առաջնության չեմպիոնատում Գեղամ Վարդանյանը պատանիների պայքարում իրեն հավասարը չունեցավ: Երևանցի մարզիկը դարձավ Սովետական Միության սեղանի թենիսի հավաքական թիմի անդամ և մեկնեց Շվեդիա՝ Եվրոպայի առաջնությանը մասնակցելու: Մալմյո քաղաքում էլ, ուր տեղի էր ունենում մրցությունը, Գեղամը արտասահմանյան հանդիսատեսին հիացրեց իր գեղեցիկ և հմուտ խաղով:

Իսկ 1965 թվականի գարնանը Սովետական Միության պատանիների առաջնության տուրնիրում Գեղամ Վարդանյանը անհատական մրցություններում հաղթելով իր բոլոր հակառակորդներին՝ արժանացավ չեմպիոնի ոսկե մեդալին ու դափնեպսակին:

Այդ նույն մրցումների ժամանակ Գեղամը փայլուն հաջողությունների հասավ նաև զուգախաղերում և ստացավ երկրորդ ոսկե մեդալը:

*ՆՈՐԻԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

## ԱՆՁՐԵՎԻ ԵՐԳԸ

*ՎԼԱԴԻՄԻՐ ԲԱՂԴԱԳՅՈՒԼՅԱՆ*

— Ամեն շիթս՝ մի բողբոջ,
Դալար ոստ է մի առողջ,
Ամեն շիթս՝ մի ծաղիկ,
Հավքի կանչ է ու տաղիկ,
Ամեն շիթս՝ ոսկե հասկ,
Ես՝ գետերի աշխույժ վազք,

Աղբյուրների վարար ակ,
Լճի կոհակ ու կայլակ,
Ծովի ծփանք ու ալիք,
Բարիքներով լի գալիք,
Ես՝ երփներանգ ծիածան,
Ես՝ լիություն ծայրից-ծայր...

# ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

ՀԵՆՐԻ ԼՈՆԳՖԵԼԼՈ
*(Ամերիկյան բանաստեղծ)*

Եկեք ինձ մոտ, երեխանե՛ր,
Եկեք ուրախ ձեր խաղով,
Դուրս վանեցեք կասկած ու վիշտ
Ձեր մանկական ծիծաղով

Դուք եք բացել պատուհաններ
Դեպի արև, դեպի լույս,
Սոխակներն են այնտեղ երգում
Եվ առվակներն ոսկեհյուս։

Ձեր սրտում կա արևի շող,
Թռչնի դայլայլ, առվի երգ,
Իսկ իմ սրտում՝ աշնան քամի,
Ձմռան ծառեր՝ որբ ու մերկ

Ա՜խ, չենք կարող մենք առանց ձեզ
Ապրել այս բիրտ աշխարհում.
Կխարխափենք օր ու գիշեր
Մենության ցուրտ խավարում

Տերևները կանաչ ու խիտ
Սուրբ ավիշն են անտառի
Այսպես դուք էլ, երեխանե՛ր,
Լույսն եք, հույսն եք աշխարհի։

Եկեք ինձ մոտ, երեխանե՛ր,
Շշնջացե՛ք ինձ թաքուն՝
Ի՞նչ են երգում հավքն ու քամին
Արևաշող երկնքում

Ի՜նչ է մարդու խելքն ու միտքը։
Ի՜նչ են գրքերն իմաստուն,
Երբ որ կա ձեր քնքշանքը տաք
Եվ ձեր դեմքերը խնդուն

Ձեզանից լավ՝ երգ չի տեսել
Այս աշխարհը հինավուրց,
Դուք՝ կենդանի երգ ու ծիծաղ,
Մյուսը՝ դատարկ,՜ փուչ գրույց։

Անգլ. թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ



# ԿՌԱՀԻՐ

ՄԱՐԻԱ ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ

Զյունով լիքը տուփը թաղեց հողի տակ
Ու հիշեց, երբ ամառային օրը տաք
Երկրի վրա կայծ ու կրակ էր ցրում
Եվ ամեն ոք զով ու ստվեր էր փնտրում.
Հիմա, հիմա զարմացրենք բոլորին,
Պաղ ձյուն բերենք այս ամառվա շոգ օրին
Կանչեց նա իր ընկերներով տարեկից
Փորեց-հանեց ձմեռվա գանձը հողից։
Ցնցվեց տղան, դեմքին արդեն գույն չկա.
Այս ինչի՞ց է, որ տուփի մեջ ձյուն չկա։
Մութ գաղտնիքը տղան բացել է փորձում.
«Ինչ-որ գողի մատը խառն է այս գործում»։
Դե հավաքիր քո մտքերը ցանուցիր,
Լավ մտածիր և հանելուկը լուծիր.
Ջե՞ս կռահում, թե ձյունն ուր է գնացել,
Որ տուփի մեջ խոնավ հետքն է մնացել

Թարգմ. Հ. ՍԱՀՅԱՆ











# ՄԱՆՈՒՇԸ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Աղջիկներ շա՜տ կան մեր դասարանում
Եվ քաղաքում էլ կան՝ որքան ասես,
Բայց թեկուզ լինեք ամբողջ աշխարհում,
Աղջիկ չեք գտնի,դուք Մանուշի պես։

Ջուր չեն անունը դրել Մանուշակ,
Այնքա՜ն խելացի ու համեստ է նա,
Իսկ աչիկները, ջինջ ու կապուտակ,
Ասես մի-մի լիճ լինեն Սևանա։

Մենք միասին ենք պարապում, խաղում
Ու չենք ձանձրանում իրարից երբեք,
Թեև տղերքն ինձ վրա ծիծաղում
Ու ինձ «աղջիկ» են անվանում մեկ-մեկ։

Հաճախ նստում ենք մեկտեղ, երազում
Գալիք երջանիկ օրերի մասին
Ու գաղտնիքներ ենք մենք իրար ասում,
Որ երբեք, ո՛չ մի մարդու չենք ասի...

Մեր դասարանում աղջիկներ շատ կան
Եվ քաղաքում էլ կան՝ որքան ասես,
Բայց թեկուզ ամբողջ աշխարհըման գաք,
Աղջիկ չեք գտնի դուք Մանուշի պես։



# ԵԿԵՔ ՆԿԱՐԵԼ ՍՈՎՈՐԵՆՔ

Գեղարվեստական լավ նկարը գրավում է դիտողի ուշադրությունը, նրա մեջ խոհեր ու զգացմունքներ է արթնացնում և գեղարվեստական հաճույք պատճառում: Պարզ է, որ նկարիչը ճիշտ է ընկալել ու վերարտադրել գեղեցիկը: Իսկ գեղեցիկը զգալ և ճանաչել կարողանալը անհրաժեշտ է ոչ միայն նկարիչին: Չէ՞ որ յուրաքանչյուր մարդ ձգտում է գեղեցիկ և ճաշակով հագնվել, ունենալ գեղեցիկ կահ-կարասիներ, շրջել գեղատեսիլ վայրերում, գնումներ կատարելիս ընտրել դուրեկանը, գեղեցիկը և այլն: Ուստի այդ տեսակետից նկարչությունը զարգացնում է մարդու ոչ միայն գեղեցիկի ընկալման հնարավորությունները, այլև նրա աշխարհայացքը, կուլտուրան ու ճաշակը:

Վաղուց է ապացուցվել հին վարպետների ասած այն ճշմարտությունը, որ նկարողի համար ամենամեծ ուսուցիչը դա բնությունն է: Եթե ունեք կամքի ուժ, աշխատասիրություն և սեր դեպի նկարչությունը, ուստի կարող եք սովորել նաև ինքնուրույն:

Ի՞նչ և ինչպե՞ս նկարել:

Քանի որ դուք նոր եք սկսում նկարել, ուստի լավ կլինի, որ ձեզ դուր եկած տեսարաններից ու առարկաներից բացի, հաճախ նկարեք պարզ կառուցվածք ունեցող առարկաներ: Օրինակ՝ խորանարդ, քառանկյունի, արկղ, գրքեր և այլն: Եթե դուք կարողանաք վերարտադրել նման պարզագույն ծավալային ձևերը, այնուհետև հեշտությամբ կվերարտադրեք նաև գլանի, կոնի, գնդի ու նման ձև ունեցող մարմինները:

Վերցրեք մի խորանարդ, դրեք սեղանի վրա և դիտեք, կտեսնեք, որ նրա նիստերից մեկը լրիվ մեծությամբ է երևում, մյուսը՝ փոքրացած, երրորդը՝ ավելի փոքր և այլն (չնայած բոլոր նիստերը նույն մեծությունն ունեն):

Փորձեք պտտել խորանարդը, կտեսնեք ընդհակառակը, փոքր կողերը մեծ են երևում: Այդպիսի փոփոխությունները կոչվում են կրճատում, կամ կրճատման փոփոխություններ:

Եթե դուք պայուսակը մոտեցնեք պատին, պատը ֆոն կհանդիսանա պայուսակին: Կամ եթե բաժակը դնեք հատակին, հատակը ֆոն կհանդիսանա բաժակի համար: Իսկ բնության մեջ ծառերի համար մի դեպքում կարող են ֆոն հանդիսանալ երկինքն ու ամպերը, մի այլ դեպքում՝ լեռները և այլն: Ֆոնի միջոցով հնարավոր է նկարվող առարկան ցայտուն դարձնել և ստեղծել գունային հետաքրքիր միջավայր:

Նկարելիս պետք է այնպես նստել, որ ձեր և առարկայի միջև եղած հեռավորությունը առարկայից մեծ լինի 3 անգամից ոչ ավելի, իսկ ընտրած դիրքը լինի գեղեցիկ ու բնորոշ առարկային: Ալբոմը դրեք ուղիղ, որպեսզի պատկերը նրա վրա թեք չստացվի: Խուսափեք շատ կարծր և շատ փափուկ մատիտներ օգտագործելուց: Թղթի երկու երեսի վրա նկարել չի կարելի: Օգտագործեք սպիտակ ու փափուկ ռետիններ: Պատկերը պետք է ընդգրկի թղթի կենտրոնական մասը և թղթի համեմատությամբ շատ մեծ կամ փոքր չստացվի: Առարկային նայեք կկոցած աչքերով, այդ դեպքում երևում է նրա ընդհանուր տեսքը: Պատկերի տեղադրումից հետո սկսեք գծանկարել առարկայի ամենամեծ չափերը, դիցուք, նկարում եք աշակերտական պայուսակ: Անհրաժեշտ է պատկերում նախ ցույց տալ երկարության, բարձրության, լայնության չափերի հարաբերությունները և ապա տեղադրել փականը, բռնակը, եզրերի երկաթները ու այլ մանրամասները:

Նկարել սկսեք թույլ գծերով, այնպես, որ ստացվի առարկայի պատկերը, շեշտեք միայն բնորոշ գծերը: Թույլ գծագրելու դեպքում ավելորդ գծերը հեշտությամբ են մաքրվում: Խուսափեք քանոն, կարկին ու այլ օժանդակ պիտույքներ օգտագործելուց: Եթե ձեր ցանկացած գիծը չեք ստանում, ապա մի առանձին թղթի վրա այնքան փորձեք, որ ձեր ձեռքը հմտանա: Առարկայի համաչափությունների և լուսաստվերների պատկերման ժամանակ նկարողին օգնում է համեմատություն կատարելը, այդ միջոցով հեշտությամբ կպարզաբանեք, թե որն է ամենաերկար, ամենանեղ, բարձր, ցածր և այլ կողմերը, ինչպես նաև կորոշեք ամենալուսավոր ու մուգ տեղերի, կիսաստվերների միջև եղած տարբերությունները:

Եթե դուք ուշադրությամբ դիտեք արևածագը կամ մայրամուտը, ապա կտեսնեք, որ բնության գույները փոփոխվում են շատ արագ: Պարզ է, որ նման պահերը նկարելու համար նկարողը պետք է շտապի վերարտադրել գույների փոխհարաբերությունները: Գունագեղ ծաղիկներն ու հյութալի մրգերը հաճախ այնպիսի անմիջական զգացմունքներ են առաջացնում նկարչի մեջ, որ նա ձգտում է արագ կերպով պատկերել այդ գեղեցիկ ձևերն ու գույները: Մեկ շնչով նկարելու առիթները շատ են և շատ օգտակար: Սակայն չի կարելի բոլոր դեպքերում այդպես նկարել: Քանի որ բնական առարկաները կամ բնության բազմազան ու բարդ ձևերի ու գույների, դրանց փոխազդեցությունների և այլ կարգի խնդիրների լուծումը պահանջում է նաև խորազնին ու բազմակողմանի ուսումնասիրություն, ուստի խորհուրդ է տրվում նկարը հասցնել ավարտին նաև մի քանի էտապներով: Այդ ընթացքում կլուծեք մինչ այդ ձեզ զաղտնիք թվացող շատ խնդիրներ և հետզհետե կհարստացնեք ձեր փորձն ու գիտելիքները:

Աշխատելիս հաճախ պետք է վեր կենալ տեղից և քիչ հեռվից դիտել նկարը, այդ դեպքում թերությունները շուտ են նկատվում:

Դիցուք, մի՛ երկու ժամ նկարելուց հետո փոփոխվում են առարկայի վրա ընկած լուսաստվեր-



դասավանդում է աշխարհի չեմպիոն
ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

## ՆԱՎԱԿԸ՝ ԶԻՆՎՈՐԻ ԴԵՄ

Պրակտիկայում ավելի հաճախ է հանդիպում նավակի պայքարը զինվորի դեմ: Նման, առավել բարդ դեպքերում, պայքարի ելքը ամբողջապես կախված է այն բանից, թե կողմերին ինչպես կհաջողվի կոորդինացնել իրենց ֆիգուրների գործողությունը: Պետք է ասել, որ ուժերի նման հարաբերակցության դեպքում խաղի վարումը բավականին մեծ ճշտություն է պահանջում:

Բնորոշ օրինակ: Սևերի ֆիգուրները բավականին ակտիվ են, և խաղի ելքը կախված է քայլի հերթից:

Քայլը սպիտակներինն է՝ 1. Աb4 e3 2. Աc3 e2 3. Աd2 այնուհետև՝ Նe1 և Ն:e2:

Քայլը սևերինն է՝ 1... e3 2. Աb4 e2 3. Աc3 e1Թ 4. Ն:e1 Ա:e1 և ոչ-ոքի:

---

*ները: Ուրեմն պետք է դադարեցնել աշխատելը և այն շարունակել հաջորդ օրերի նույն ժամերին: Դադարի ժամանակ առարկան մի շարժեք տեղից:*

*Գույներով նկարելը զարգացնում է մարդու գունազգացողությունը: Գունանկարի համար ընտրեք ծաղիկներ, մրգեր կամ որոշակի գույն ունեցող տնային գործածական իրեր: Սկզբում նկարեք մեկական հատ, իսկ հետագայում կարող եք ավելացնել:*

*Ջրաներկով նկարելուց առաջ ներկի շերտը փորձեք թղթի անկյունում, եթե այն հավասար չի տարածվում (կաթիլների ձևով հավաքվում է), ապա թղթի մակերեսը բամբակով թրջեք և թողեք չորանա կամ ձեզ մոտ դրեք օճառ և վրձինը հաճախակի օճառոտեք: Նկարելուց առաջ վրձինը թրջեք և նրանով ներկերը մաքրեք ավելորդ կեղտերից, հաճախակի փոխեք նկարելու ջուրը, ունեցեք նաև մաքուր շորի կտոր՝ վրձինները մաքրելու համար: Խուսափեք կոշտ մազեր ունեցող վրձիններ օգտագործելուց, ունեցեք 5 և 12 համարի փափկամազ վրձիններ: -*

*Ծաղիկներ նկարելիս եթե դուք կարմիր կամ դեղին գույնը ներկամանից վերցնում և միանգամից ծածկում եք պատկերը, ապա դա դեռ չի նշանակում, որ բոլոր դեպքերում նույնը պետք է կատարել: Ինչո՞ւ: Որովհետև գույները ազդում են մեկը մյուսի ու իրենց շրջապատի վրա կամ կրում են շրջապատի գույների ազդեցությունը: Այդ պատճառով էլ պետք է վերցնեք մի կտոր սպիտակ թուղթ, նրա վրա կատարեք գույների խառնուրդ (օրինակ՝ կարմիրի և դեղինի խառնուրդից կստացվի նարնջագույն, կապույտի և դեղինի խառնուրդից՝ կանաչ, կարմիրից և կապույտից՝ մանուշակագույն և այլն): Գտեք ձեր ցանկացած գույնը, ապա նրանով ծածկեք պատկերը: Եթե նպատակ եք դրել նկարը ավարտել երկու կամ երեք էտապում, ապա նկարել սկսեք գույների բարակ շերտերով և առարկայի լուսավորված կողմերից (որոնք պահանջում են ավելի բաց գույներ) հակառակ դեպքում դժվար է շտկել նկարում թույլ տված սխալները:*

*Գունանկարելիս պետք է միաժամանակ պատկերել թե առարկայի և թե նրա միջավայրի գույների փոխհարաբերությունները: Պատկերը առաջին անգամ գույնի բարակ շերտով ծածկելուց հետո, թողեք այն չորանա, ապա անցեք աշխատանքի հաջորդ էտապներին: Գունանկարի նպատակով կատարած գծանկարը պետք է գծագրված լինի թույլ գծերով և զերծ լինի կոպիտ ջնջումներից, որպեսզի ջրաներկի շերտը հավասար տարածվի*

Քայլը սպիտակներինն է՝ 1. Աd6 e3 2. Աd5 e2 3. Աd4 Աf3 4. Աd3 Աf2 5. Աd2 և սպիտակները հաղթում են:

Քայլը սևերինն է՝ 1... e3 2. Աd6 e2 3. Աd5 Աe3 4. Աc4 Աf2 և ոչ-ոքի:

Տեսնենք ինչ կստացվի, եթե սև արքան տեղափոխենք «d4»:

1. Աc6 e3 2. Աb5 e2 3. Աb4 Աd3! եթե 3... Աe3, ապա 4. Աc3 Աf2 5. Աd2 և սպիտակները շահում են: 4. Աb3 Աd2՝ ոչ-ոքի:

Խաղացեք տվյալ օրինակը ուշադրությամբ, այն չափազանց ուսանելի է: Սև արքայի թվացող չնչին տեղափոխումը վճռական դեր խաղաց: Սևերը հնարամտորեն օգտվեցին արքայի հաջող դրությունից, որն իր զինվորը պաշտպանելու համար շարժվելով առաջ, միաժամանակ խանգարեց հակառակորդի արքայի արագ առաջխաղացմանը:

Այժմ, երբ մենք ծանոթ ենք «Նավակը զինվորի դեմ» խաղավերջի որոշ հիմնական դրույթներին, մեզ հասկանալի կլինի հետաքրքիր դիրքի էությունը, որի հեղինակն է անցյալի ականավոր շախմատիստներից մեկը՝ Ռիխարդ Ռետին:

Նավակը գտնվում է արքայի հարվածի տակ: Սակայն ու՞ր նահանջել: Քայլելով չորրորդ հորիզոնականով, նավակը կգրավի անհաջող դիրք, և սևերն առաջ շարժելով զինվորը՝ առանց դժվարության ոչ-ոքի կանեն: Ուրեմն պետք է նահանջել «e» գծով: Սակայն ո՞ր դաշտն ընտրել: Թվում է, թե լավ է 1. Նe1. բայց այն ժամանակ 1—. e4 2. Աe7 Աe5!. 3. Աd7 Աd5! քայլերից հետո սևերը չեն շտապում մոտեցնել իրենց արքան, առաջին հերթին խանգարելով հակառակորդի արքայի մոտեցմանը: Այնինչ սպիտակ նավակի քայլերը «e» գծով, սևերին հնարավորություն կտային «փրկարար» քայլ շահել: Օրինակ՝ 4. Նe2 Աd4 5. Աe6 Աd3 6. Նe1 e3 7. Աf5 e2, այնուհետև՝ 8... Աd2 և ոչ-ոքի:

Դիրքի կռահումը 1. Նe2 կամ 1. Նe3 քայլերի մեջ է: 1... e4

---

*թղթի վրա: Սպիտակ ջրաներկի փոխարեն օգտագործեք թղթի սպիտակությունը:*

*Նկարելիս հաճախակի ձեր նկարածը համեմատեք բնական առարկայի հետ:*

*Բնության տեսարանները վերարտադրելիս պետք է ձգտել թղթի վրա ստեղծել խորություն, տարածություն, ուստի պետք է շեշտեք մոտերքում գտնվող առարկաները, իսկ հեռվում երևացողները պատկերեք ավելի մեղմ:*

*Համեմատության միջոցով պարզաբանեք լուսաստվերների, ձևերի, գույների միջև եղած տարբերությունները. խուսափեք նույնանման ծառեր, տներ և այլ պատկերներ կրկնելուց: Բնանկար կատարելիս նստեք ստվերում, որպեսզի արևի շողերը չընկնեն ձեր թղթի վրա: Նկարել սկսեք նախ փոքր չափի թղթի վրա, ապա հետզհետե մեծացրեք այն: Թուղթը փակցրեք հարթ մակերես ունեցող ֆաների վրա:*

*Ձեզ դուր եկած տեսարանը նկարեք առավոտյան, կեսօրին և մայրամուտին: Դուք կզգաք բնության գույների հետ տեղի ունեցող փոփոխությունները օրվա տարբեր ժամերին: Տուն վերադառնալիս փորձեք նկարել նաև հիշողությամբ, դա կզարգացնի ձեր հիշողական երևակայությունը: Ամառային արձակուրդի ընթացքում ճամբարներում և այլ վայրերում գտնվելիս նկարեք ձեզ հետաքրքրող տեսարանները: Եթե դուք հաջորդաբար չեք նկարում, մոռացության են տրվում ձեռք բերված փորձն ու գիտելիքները: Երբ ձեր երևակայության մեջ կոնկրետ պատկերներ են առաջանում, դրանք վերարտադրեք առանց հետաձգելու, որովհետև հետագայում այդ պատկերները կարող է չմնան ձեր հիշողության մեջ: Խուսափեք արտանկարներ կատարելուց. ընդօրինակել, կնշանակի մեխանիկորեն կրկնել ձևերն ու գույները. այդ միջոցով չեք կարող զարգացնել ձեր ստեղծագործական ունակությունները:*

*Մի՛ հուսահատվեք առաջին անհաջողությունից: Համառորեն նկարեք մի քանի առաջադրանք և համեմատեցեք դրանք, դուք կզգաք ձեր առաջադիմությունը: Նկարչությունը օգնում է մարդուն ճիշտ հասկանալ ու գնահատել իրականությունը, տեսնել ու զգալ գեղեցիկը, վեհացնում է հոգին, մղում դեպի ազնիվը, լավն ու գեղեցիկը: Ահա թե ինչու է նկարելը անհրաժեշտ ոչ միայն բժշկին, կոնստրուկտորին, երկրաբանին և մյուս մասնագետներին, այլև յուրաքանչյուր կիրթ ու բազմակողմանի զարգացած մարդու: Ուստի դուք էլ նկարել սովորեք:*

**ՍԵՐՅՈԺԱ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
(Նկարչության դասատու)

քայլից հետո հետևում է արտասովոր՝ 2. Նe1! Սպիտակները հարմար ժամանակի են սպասում, որովհետև սև արքայի յուրաքանչյուր քայլը ձեռնտու է սպիտակներին: 2... Աe5: Հրապուրելով սևերին բնական 3. Աg3 կատարել, սպիտակները խորամանկում են: Այդ քայլին, ինչպես մեզ արդեն հայտնի է, կհետևի՝ 3... Աf4, թույլ չտալով, որ սպիտակ արքան մոտենա: 3. Աe7!!: Հիմա սևերը արդեն ստիպված են բացել իրենց մտադրությունները: Եթե նրանք իրենց զինվորին մոտենան «f4» դաշտով, ապա սպիտակ արքան կանգնի մյուս կողմը՝ 3... Աf4 4. Աd6 e3 5. Աd5 Աf3 6. Աd4 e2 7. Աd3 և այլն: Իսկ եթե 3... Աd4, ապա հասկանալի է՝ 4. Աf6 և այլն:

Զափազանց գեղեցիկ է Գ. Սամվեդրայի խաղավերջը:




1. c7 Նd6 2. Աb5: Եթե 2. Աb7, ապա՝ 2... Նd7 քայլից հետո ոչ-ոքի է, իսկ՝ 2. Աc5 քայլին հետևում է 2... Նd1: Միակ դաշտը, ուր սպիտակ արքան կարող է շախերից թաքնվել՝ «c2» վանդակն է: Այնտեղ էլ նա մոտենում է քայլելով «b» գծով, որովհետև անցնել «c» գիծը իմաստ չունի՝ նավակով առաջին հորիզոնականը քայլելու հետևանքով: 2... Նd5 3. Աb4 Նd4 4. Աb3 Նd3 5. Աc2: Այժմ թվում է, թե խաղատախտակի վրա նոր թագուհու «ծնունդը» անխուսափելի է, իսկ թագուհու և նավակի մենամարտում կարելի է հաղթել առանց դժվարության: Այս թեմային մենք դեռ կվերադառնանք:

5. ...Նd4!: Այժմ հապճեպ՝ 6. c8Թ քայլը ոչ-ոքիի կհանգեցներ՝ 6... Նc4 7. Թ:c4՝ պատ:

6. c8Ն!!: Մատ է սպառնում «a» ուղղաձիգի վրա, որից պաշտպանվելու միակ միջոցն է՝ 6... Նa4: «Մեղմ», ինչպես ասում են. 7. Աb3 քայլը բացահայտում է սևերի անպաշտպան վիճակը՝ սպառնում է մատ c1-ից և հարվածի տակ է նավակը:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ «Մեր պատանի ստեղծագործողները»:


Խմբագիր՝ ՍԱԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ալ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԳԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06:*

*Պատվեր՝ 1195: Տպաքանակ՝ 17 700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/VI 1965 թ.: ՀԱՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:*

Գինը 20 կ.

ԾԱՂԻԿ

ՎԱՐԴԱՆՈՒՇ ԵԳԱՆՅԱՆ
(3-րդ դաս. աշակերտ)



ՄԵՐ ՊԱՏԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՂՆԵՐԸ

# ԳԱՐՈՒՆ

Ձմռան վերջին օրն էր։ Ձմեռը հորդ արցունքներով լաց էր լինում։

Փոքրիկ Արմենին զարմացնում էր այն, որ այդքան ցուրտ ձմեռը լաց է լինում։ Ճիշտ է, նա սիրում էր ձմեռը։ Չէ՞ որ ձմռանը ձնագնդի էին խաղում, սահնակ քշում և այնքան լավ էր, երբ նրանք կանգնում էին օդի մեջ պարող ձյան փաթիլների տակ։ Բայց Արմենը չէր ուզում, որ ձմեռը անվերջ մնա։

Մայրիկը նրան պատմել էր, որ ձմռանը հաջորդում է գարունը։ Գարնանը ծաղկում են ծառերը, ծաղիկները։ Հեռու երկրներից վերադառնում են արագիլները ու ծիծեռնակները, կռունկներն ու սարյակները։

Արմենը վազեց տուն։

— Տատիկ, ասա գարնանը, թող գա,— ասաց նա։

— Արմեն ջան, գարունը առանց իմ ասելու էլ կգա,— ասաց տատիկը։

— Չէ, ես ուզում եմ շուտ գա։

Քնելուց առաջ Արմենը էլի խնդրեց.

— Տատ, տատիկ ջան, չմոռանաս, լա՞վ։

— Լավ, Արմեն, կասեմ,— խոստացավ տատիկը։

Արմենը քնեց։ Երազում նա տեսավ գարնանը։ Ձմեռը անընդհատ կռվում էր գարնան հետ։ Ձմեռը հագել էր սպիտակ-սպիտակ զգեստ։ Իսկ գարնան զգեստը կանաչ էր և նրա վրա կային բազմաթիվ ծաղիկներ։ Ձմեռը միշտ ստիպում էր գարնանը, որ նա հեռանա։ Բայց գարունը կանգնել էր լուռ և հաստատակամ։ Գարնան համառությունը խիստ բարկացրեց ձմռանը։ Ձմեռը զայրացած վրա հասավ գարնանը։ Գարունը տեղից չշարժվեց։ Ձմեռը բարկությունից լաց եղավ։ Նրա արցունքները հոսեցին ճերմակ զգեստի վրայով։ Զգեստը սկսեց կամաց-կամաց հալվել։ Ձմեռը մերկացավ։ Նա ամաչեց մերկ երևալ մարդկանց աչքին։ Հազիվ քարշ տալով հագուստի վերջին ծվենները, ձմեռը հեռացավ դեպի բարձրաբերձ լեռների կատարները ու ծվարեց այնտեղ։

Գարունը մնաց։

Արմենը ուրախացած արթնացավ։ Նա վազեց բակ։ Դեռ նոր հալված ձյան տեղը մի ծաղիկ էր բուսնել։ Արմենը ծաղիկը պոկեց և վազեց տատիկի մոտ.

— Տատիկ, այս ի՞նչ ծաղիկ է։

— Վա՜յ, Արմեն ջան, ձնծաղիկ է։ Ձնծաղիկը գարնան ամենաառաջին ծաղիկն է։ Գարունն արդեն եկել է։

Արմենը ձնծաղիկը ձեռքին վազեց բակ։ Բարդու կատարին, ինչպես մի քըրքըրված գլխարկ, երևում էր արագիլների հին բույնը։ Արագիլը մի ոտքի վրա կանգնած նայում էր շրջապատին։



ՈՒՐԱԽ ՕՐ

*ՀԱՍՄԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ*

*(Երևանի №130 մանկապարտեզ, 7 տարեկան)*

— Արագիլ, գարունն եկավ, դո՞ւ էլ եկար,— կանչեց Արմենը։

— Գարունն եկա՜վ, գարունն եկա՜վ,— նրան ձայնակցեցին ընկերները, որոնք հավաքվել էին այնտեղ։

Մանուկների կանչին որպես պատասխան՝ հեռվում, կապույտ երկնքի խորքում, երևաց կռունկների առաջին շարանը։

— Կը՜ռ, կը՜ռ, կը՜ռ։

ՆԱՐԱՆՈՒՇ ՍՈՂՈՄՈՆՅԱՆ
(Վեդի, 8-րդ դասարանի աշակերտուհի)



ԱՆԱՀԻՏ

ԱՐԵՎԻԿ ԱՐՇԱԿՅԱՆ
(Երևանի Պուշկինի անվան դպրոցի 4-րդ դաս. աշ.)

# ԴՌԱՆ ԱՊԱԿԻՆ

(Հեքիաթ)

Հին ժամանակ մի մարդ գեղեցիկ դուռ ուներ։ Մի անգամ դռան ապակին ջարդվեց։ Մարդը շատ տխրելով մտածեց. «Ունեցած-չունեցածս այս գեղեցիկ դուռն էր, սա էլ ջարդվեց, հիմա մնացել եմ մի փոքրիկ տնակում։ Դուռս՝ գեղեցիկ, բայց ապակի չունեմ։ Հարկավոր է մի լավ ապակի։ Բայց որտեղի՞ց, փող չունեմ, որ գնել տամ։ Մի ուրիշ լավ բան էլ չունեմ, որ ծախեմ։ Դուռս է միայն, որ կարելի է ծախել։ Բայց չէ՞ որ փողը ինձ դռան համար է հարկավոր»։

Եվ այդպես մարդը գնում է փող վաստակելու։ Հանկարծ փողոցում նա մեկ ռուբլի է գտնում և ուրախ-ուրախ վերադառնում է տուն։ Տուն մտնելու ժամանակ մտածում է. «Այս մի ռուբլին մարդիկ քրտինքով և չարչարանքով են ստանում, իսկ նրանից փողերը գտնում եմ ես և ինքս ուրախանում»։ Եվ մարդը որոշում է փողը ետ տալ իր տիրոջը։ Մի րոպե մտածում է. «Այս փողը ու՞մ պետք է տամ, եթե տանեմ և փողոցում բղավելով հարցնեմ, թե՝ ումն է, պատահական մի մարդ կարող է փողը տանել»։

Մարդը իր գտած փողով գնում է մի փոքր շվի և մեկ ամսում սովորում է նվագել։ Մեկ ամիս հետո մարդը գնում է իր շվիով փող վաստակելու։

Մեկը նրան 10 կոպեկ է տալիս, մյուսը՝ 5 կոպեկ, մեկ ուրիշը՝ 3 կոպեկ և այսպիսով մարդը 5 ռուբլի է լրացնում։ Բայց մարդը այս անգամ գոհ է լինում իրենից, որովհետև այդ փողը նա ոչ թե գտել էր, այլ իր չարչարանքով վաստակել։ Գնում է մարդը տուն և մտածում.

«Այ հիմա ես կարող եմ մի գեղեցիկ ապակի գցել»։ Եվ այդ մտքով մարդը գնում է ապակի փնտրելու։ Երբ նա մտնում է մի բակ, այնտեղ մեկը իր դռան ապակու նման շատ գեղեցիկ մի ապակի թևի տակ դրած՝ բղավում էր. «Լուսամուտի շուշա՜ գցեմ, լուսամուտի շուշա՜»։

Եվ մարդը այդ տեսնելով ու լսելով այն մարդու ձայնը, վազում է նրա մոտ.

— Ես եմ ուզում։

Վաճառողը հարցնում է տան հասցեն։ Բայց դռան տերը պատասխանելու փոխարեն՝ հարց է տալիս.

— Ի՞նչ արժե։

Վաճառողը պատասխանում է, թե՝ երեք ռուբլի, հետո հարցը կրկնում է.

— Որտե՞ղ է ձեր բնակարանը։

Մարդը քաշելով նրա թևից, գոռում է.

— Գնա՛նք։

Երբ նրանք մտնում են բնակարանը և ծախողը տեսնում է այն գեղեցիկ դուռը, քիչ է մնում քարանա, որովհետև նա այդքան տարի աշխատել է, ապակի է գցել, բայց ոչ մի անգամ այդպիսի գեղեցիկ դուռ չի տեսել։ Եվ մի քանի րոպե լուռ կանգնում է։

— Հը՞, ի՞նչ ես կանգնել, դե գցի, է՛։

Եվ վաճառողը ձեռքերը դանդաղ բարձրացնելով՝ պատրաստվում է հագցնել ապակին, երբ նորից լսում է մարդու անհամբեր ձայնը.

— Դե գցի է՛, ինչ ես քնել։

Երբ ապակեգործը ապակին տեղը գցեց ու գնաց, մարդը նստեց իր դռան մոտ և ինքն իրեն ասաց.

— Այ թե դուռ է հա՜։

ԱՆԱՀԻՏ ՍՏԵՓԱՆՅԱՆ

(Երևանի Խ. Աբովյանի անվ. դպրոցի 3-րդ դաս. աշ.)



ԵՂՆԻԿԸ ԱՆՏԱՌՈՒՄ

ՄՅԱՍՆԻԿ ՄԽԻԹԱՐՅԱՆ

(Ապարանի շրջան. Ջրաշեն գյուղի միջ. դպրոցի աշակերտ)

## ԾԻՏԸ

Էս մեր բակի ծառի ծիտը,
Ոչ քուն ունի, ոչ դադար,
Դեռ չծագած լույսն արևի՝
Ծլվլում է միալար։

Թռչկոտում է ծառի ճյուղին
Մինչև արևն է ելնում,
Հետո թևին տալիս գնում,
Կեր է փնտրում մարգերում։

Ա՜խ, հասկացա ես մեր ծտին,
Ինձ է քնից վեր հանում,
Անուշ քունս առած թևին,
Թռչկոտում է, հեռանում։

Էս մեր բակի ծառի ծիտը,
Ո՛չ քուն ունի, ո՛չ դադար,
Դեռ չտեսած լույսն արևի՝
Ծլվլում է միալար։

ԼՈՐԵՏԱ ՊՈՂՈՍՅԱՆ

(Լենինականի Ս. Սպանդարյանի անվան դպրոցի 5-րդ դաս. աշ.)



ԾԱՂԻԿՆԵՐ

*ՍԱՀԱԿԱՆՈՒՇ ԱԹՈՅԱՆ*
*(Թալինի շրջան, Զարինջա գյուղ, 7-րդ դաս. աշ.)*

## ԱՅԾԻԿ

Այծիկ, չա՛ր ես, շա՛տ ես չար,
Չունես հանգիստ ու դադար:
Վազվզում ես, թռչկոտում
Կանա՛չ-կանա՛չ արոտում:
Ոչ լսում ես տատիկին,
Ոչ էլ փոքրիկ Սաթիկին:
Իսկ երբ Չալոն է հաչում
Կամ թե ճիպոտն է շաչում,
Այդ ժամանակ խեղճացած՝
Դու գլուխդ ես կախում ցած...
Լավ չի՞ լինի, ա՛յ այծիկ,
Ա՛յ ոստոստան իմ կայծիկ,
Առանց ծեծի լինես հեզ,
Որ բոլորը սիրեն քեզ:

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*
*(Երևանի 82-րդ դպրոցի 6-րդ դաս. աշ.)*

# ԻՍԿԱԿԱՆ ԸՆԿԵՐ

Դասարանում խոր լռություն էր տիրում: Միայն լսվում էր ծայրերի ու մերթ ընդ մերթ գրատախտակին հպվող կավիճի խզզոցը: Վերջին նստարանին նստած սևահեր տղան չէր լսում այդ ձայները. նա կլանված վճռում էր հանրահաշվական մի բարդ խնդիր:

— Վարդանյան, նստիր տեղդ. սխալ ես լուծում, «երկու»:

Դասարանի լռության մեջ բարձր հնչեց ուսուցչի ձայնը: Տիգրանը ցնցվեց և զարմանքից լայն բացված աչքերով նայեց շուրջը: Մի քանի վայրկյան հետո, վերացած շրջապատից, նա նորից տարվեց լուծելով:

Բայց այս ի՞նչ է. ո՞վ է ծիծաղում. ա՜խ, այս աղջիկները. չեն էլ թողնում, որ մարդ աշխատի:

Նա բարկացած բարձրացրեց գլուխը և նայեց այն կողմ, որտեղից լսվում էր ձայնը: Նա ավելի զարմացավ, երբ նկատեց, որ ինքը սխալվել է: Երկու շարք այն կողմ նստած աղջիկը ցնցվում էր խուլ հեկեկոցից: Տիգրանը հետաքրքրությամբ նայեց աղջկան և կարծես չհավատաց աչքերին:

Մի՞թե դա Սեդան էր, այն Սեդան, որի դեմքից ժպիտը երբեք չէր ջնջվում, իսկ այժմ նա լաց էր լինում: Ի՞նչ էր պատահել, ինչու՞ էր նա լալիս: Ա՜խ, այո, հիշեց, չէ՞ որ «երկուս» ստացավ: Կարծես մի բան խեղդեց նրան, և նա այլևս չկարողացավ կենտրոնանալ:

Եվ դեռ ինքը ընկեր է կոչվում ու ցանկանում է նմանվել Օլեգ Կոշևոյին: Իսկ եթե Օլեգը իր տեղը լիներ, ինչպե՞ս կվարվեր, իհարկե, կօգներ Սեդային, և նա այսօր «երկուս» չէր ստանա: Նրա ականջներն այրվում էին ամոթից: Զանգը սթափեցրեց նրան, և նա ինքնաբերաբար նայեց Սեդայի կողմը: Սեդան վերցրեց պայուսակը և դուրս եկավ դասարանից: Տիգրանը նույնպես վերցրեց պայուսակը և հետևեց նրան: Հասնելով առվի մոտ գտնվող հաստաբուն բարդուն, Սեդան գլուխը հենեց ծառին և ավելի անզուսպ հեկեկաց: Տիգրանը մոտեցավ նրան.

— Ոչինչ, Սեդա, բավական է լաց լինես: Եթե դու ցանկանաս՝ մենք միասին կպարապենք և դու այլևս «երկուս» չես ստանա:

Աղջիկը արտասվախառն, հուսով լեցուն աչքերը հառեց նրան և մեղմ ժպտաց:

Անցան դժվարություններով լի մի քանի օրեր, և Սեդան արդեն կարողանում էր վճռել պարզ խնդիրներ: Մի օր էլ, երբ նրանք միասին դուրս էին գալիս դպրոցից, հանկարծ լսեցին ականջ ծակող սուլոցներ և զարմացած ետ նայեցին: Մի փոքր հեռու կանգնած էին նրանց դասարանցի տղաները և, գոհ իրենց արարքից, ծիծաղում էին: Նրանցից մեկը՝ Հայկը, որ Տիգրանի հետ միևնույն նստարանին էր նստում, ասաց.

— Սեդա, ի՜նչ լավ ընկերուհի ունես, չե՞ս ծանոթացնի:

Նրա խոսքերին հետևեց ընկերների բարձր հռհռոցը:

— Տիգրանուհի է անունդ, այնպես չէ՞...

Սեդան ցանկացավ ինչ-որ բան ասել, բայց վիրավորանքի արցունքները խանգարեցին նրան խոսել: Նա արագ շրջվեց և արցունքներից խեղդվելով վազեց, բայց ինքն էլ չիմանալով, թե ուր: Տիգրանը Սեդայի փախուստից հանկարծակիի եկավ և զայրույթից դողալով հանդարտ մոտեցավ ընկերներին:



ԵՂՆԻԿՆԵՐ

*ԱՊԵՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ*

*(Հոկտեմբերյանի №3 դպրոցի 6-րդ դաս. աշ.)*

— Եվ դուք համարվում եք ընկերնե՜ր,— ասաց ու վազեց Սեդայի հետևից:

Հեռվից նկատելով առվի ափին նստած Սեդային, նա դանդաղեցրեց քայլերը: Հայացքը ջրերին հառած, անշարժ նստել էր Սեդան և, կարծես, սպասում էր Տիգրանին: Երբ քայլերը մոտեցան և վերջապես շատ մոտ կանգ առան, Սեդան առանց ետ նայելու ասաց.

— Տիգրան, մենք այլևս միասին չենք պարապի, իմ պատճառով քեզ էլ են վիրավորում:

— Ինչպե՞ս թե, ի՞նչ ես ասում, Սեդա, մի՞թե նրանց խոսքերը քեզ հուսահատեցրին: Վաղը ստուգողական գրավոր է հանրահաշվից: Այսօր պետք է շատ պարապենք, վեր կաց, ժամանակն անցնում է:

Տղայի ձայնը հնչեց հրամայական, և Սեդան հնազանդվելով հետևեց նրան: Հաջորդ օրը բոլորը անհամբեր սպասում էին, թե ինչ խնդիրներ են հանձնարարվելու: Երբ ուսուցիչը գրատախտակին գրեց հանձնարարությունը, աշակերտները սկսեցին փութաջանորեն աշխատել: Դասի կեսը համարյա անցել էր, բայց Հայկը դեռևս խնդրի առաջին գործողությունն էր կատարել: Նա աչքի տակով նայում էր Տիգրանին, բայց երեկվա արարքը հիշելով՝ գլուխը կախ էր գցում և ոչինչ չէր հարցնում: Տիգրանի աչքից չէր վրիպում ընկերոջ վարանումը: Վերջապես նա չկարողացավ համբերել և հարցրեց.

— Հայկ, որտե՞ղ ես դժվարանում:

Հայկը հանկարծակիի եկած նայեց նրան, բայց հարցը երկրորդ անգամ կրկնել չտվեց և, ամոթից շիկնելով, բացատրեց անհասկանալին: Երբ հնչեց վերջին զանգը, և Տիգրանն ու Սեդան պատրաստվեցին տուն գնալ, Հայկը մոտեցավ նրանց:

— Խնդրում եմ ներեք ինձ,— ասաց նա և դուրս փախավ դասարանից:

Նրանք նայեցին միմյանց և ժպտացին: Օրերն ու շաբաթները հաջորդում էին միմյանց: Տարեվերջի բոլոր քննությունները հանձնել



ՎԱՂ ԳԱՐՈՒՆ

ՎԱՐՈՒԺԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ
(Արթիկի №2 միջ. դպրոցի աշակերտ)

էին, մնացել էր միայն հանրահաշիվը: Վերջապես եկավ սպասված օրը: Սեդան երջանկությունից փայլելով դուրս եկավ քննասենյակից և Տիգրանի հարցական հայացքին պատասխանեց.

— «Չորս»:

Նրանք դուրս եկան դպրոցից և անկախ իրենց կամքից, քայլերն ուղղեցին դեպի բարդին: Հասնելով բարդուն, Սեդան գլուխը հենեց նրան, ինչպես այն օրը, երբ Տիգրանը առաջարկեց իր օգնությունը, բայց այժմ նա ոչ թե լաց էր լինում, այլ ուրախությունից ծիծաղում էր: Նա ցանկացավ լավ, շատ լավ բառեր ասել Տիգրանին, բայց նրա դողացող շուրթերը կարողացան միայն շշնջալ.

— Շնորհակալություն, Տիգրան, դու իսկական ընկեր ես:

Երկնասլաց բարդու կատարին, մի ոստին հենված կանգնել էր արագիլը և նայում էր նոր կյանքի շեմին կանգնած պատանիներին:

ԱՆԺԻԿ ՍԱՐՈՅԱՆ
(Վեդիի միջնակարգ դպրոցի աշակերտ)

## Ն Ա Վ Ա Կ

Թերթից նավակ պատրաստեցի
Ու նավաստի ես դարձա
Եվ առագաստ ես կտրեցի,
Բարձր քարին բարձրացա։

— Փոքրիկ թղթից սիրուն նավակ,
Լճով դանդաղ դու լողա,
Լճի խորքը լողա արագ,
Քամիներից մի՛ դողա։

Եղեգների միջով հանգիստ
Լողա դեպի քարափն այս,
Սա կլինի նավահանգիստ,
Կսպասեմ, որ ինձ մոտ գաս։

## Ք Ա Մ Ի Ն

— Ո՞վ է թակում պատուհանը,
Ո՞վ է անգործ այդ անբանը...
— Դա քամին է, քամին դրսում,
Ինքն է փչում, բայց չի մրսում։

## Գ Ա Ր Ո Ւ Ն

Եկավ վառ գարուն,
Քրքջաց առուն,
Հալվում է անձայն
Պաղ վերմակը ձյան։

Ձյան տակից ելավ
Մի սիրուն ծաղիկ,
Նրա անունն է
Ձնծաղիկ։

*ԱՍՏՂԻԿ ՀՅՈՒՍՅԱՆ*
*(Կիրովական, 7-րդ դպր. աշ.)*





# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՍՈՒ

*Ես Ղուկասն եմ։ Ամենամեծը մեր ընտանիքում՝ տատիկից, պապիկից, հայրիկից, մայրիկից ու հորեղբայր Արմենից հետո։ Արսենն էլ է ինձանից փոքր, Սուրիկն էլ։ Դե, Սուրիկն այնքան փոքր է, որ անգամ գնդակ խփել չգիտի։*

*Առավոտյան բոլորը, բացի տատիկից, գնում են աշխատանքի։ Տատիկն էլ (ճիշտը որ խոստովանեմ, տատիկի նման չի, ոչ մազերն են սպիտակ, ոչ էլ ծեր է, չգիտեմ ինչո՞ւ տատիկ են ասում նրան) զբաղվում է իր առօրյա գործերով։ Ես դառնում եմ մեր տան ամենամեծ տղամարդը։ Եթե Արսենն ու Սուրիկը մի անկարգություն են անում կամ փողոց են վազում, տատիկը անմիջապես ձայն է տալիս. «Ղուկա՛ս, սաստիր դրանց», «Ղուկա՛ս, դրանց թույլ մի տա փողոց դուրս գան»։ Իսկ եթե մի գործ է լինում, որ տատիկը մենակ չի կարող անել*



ՏՆԵՐ
ԱՇՈՏ ՆԵՐՍԻՍՅԱՆ
(Երևան, 6 տարեկան)

# ՐԻԿԸ ՄԵԾԱՑԱՎ

էլի ինձ է ձայն տալիս. «Ղուկա՛ս, օգնիր էս ամանը էնտեղ դնենք, էս աթոռը քաշիր այն կողմ, բաց արա լուսամուտը»:

Բայց արի ու տես, որ իմ մեծ լինելը ո՛չ Արսենն է ընդունում, ո՛չ էլ Սուրիկը: Ես դեռ դպրոց չեմ գնում: Հայրիկս խոստացել է մյուս տարի անպայման տանել դպրոց: Երբ ես այդ մասին ասացի Արսենին, նա քիթը վեր քաշելով ասաց. «Փի՛, պապան խաբել է քեզ»: Ես չեմ հավատում նրան, որովհետև հայրիկը չի խաբի: Ա՛յ, ուրիշ է Սուրիկը: Մեկ էլ տեսար եկավ ու հորինեց.

— Ուկա՛ս, գնդակը թռավ այնտեղ,—ու մատով ցույց է տալիս արևը:

Կամ.

— Ուկա՛ս, տանիքին բազե է նստել:

Դուրս եմ գալիս՝ մի սովորական աղավնի է:

Ուզում եմ մի լավ դնքստել, ո՛չ տատիկն է թողնում, ո՛չ էլ՝ հայրիկը: Ասում են՝ փոքր է: Ախ, ե՞րբ է մեծանալու այդ չարաճճին:

Նստում ենք իմ ընկեր Աշոտիկի հետ նկար անելու: Շուտ ենք գալիս՝ մատիտը չկա, վրձինը չկա, ներկերից էլ մեկն է չքացել: Ման ենք գալիս ման, մեկ էլ տեսնում ենք հրեն մահճակալի տակ պահված է: Բավական է աչքդ թեքեցիր՝ մի բան թռցնում է: Ոնց է ներս մտնում՝ ոչ ոք չի իմանում:

Պատժելու համար ես և Աշոտիկը նկարեցինք նրան. ահա կանգնած է նա՝ մրոտ քթով, կեղտոտ ձեռքերով, մի մեծ ցախավել շալակին դրած, ստի տոպրակն էլ հետևից է քարշ տալիս: Ա՛յ թե ծիծաղեց հորեղբայր Արմենը,— բայց թույլ չտվեց Սուրիկին ցույց տալ: Նա ասաց, որ դրանից Սուրիկը ավելի կչարանա, ավելի լավ կլինի նրան նկարենք մաքուր, խելոք, մայրիկին օգնելիս: Հորեղբայր Արմենի նկարչական թղթերից մենք վերցրինք մի մեծ թերթ և ընտրեցինք համապատասխան վառ գույները: Սև գույնը չուզեցինք օգտագործել, չնայած Սուրիկի անդրավարտիքը սև կտորից է: Ուզում էինք, որ ամեն ինչ Սուրիկի վրա փայլի: Աշոտը առաջարկեց սկսել ոտքերից: Ես դրան համաձայն չէի, քանի որ հորեղբայր Արմենը միշտ սկսում է դեմքից, ու մենք այդպես էլ արեցինք:

Երբ նկարը պատրաստ էր, մենք այն ցույց տվեցինք հորեղբայր Արմենին: Նա ասաց՝ շատ լավ է: Աննկատելիորեն նկարը փակցրեցինք Սուրիկի մահճակալի վերևը՝ պատին, ու անհամբեր սպասում էինք, թե ինչ է տեղի ունենալու: Երբ Սուրիկը մտավ ննջարան, մենք թաքնվել էինք մեծ պահարանի հետևը: Նա նկատեց նկարը: Չգիտեմ ճանաչե՞ց իրեն, թե՞ ոչ, բայց երկար նայում էր նկարին: Հետո դուրս եկավ սենյակից, քիչ հետո ձեռքից քաշելով սենյակ բերեց մայրիկին:

— Մամա՛, տե՛ս,—ու մատը պարզեց դեպի նկարը,—ես էլ եմ այդպես, չէ՞:

— Այո, Սուրիկ ջան, դու էլ ես այդպիսին, աշխատիր այդպիսին լինել, դու արդեն մեծ ես,—ու շոյեց Սուրիկի գլուխը:

Մենք տեսանք, թե ինչպես մի պահ փքվեց Սուրիկը, ձգվեց ոտքերի թաթերի վրա. երևի ուզում էր հավասարվել մայրիկին: Մենք հա-

զիվ պահեցինք մեր փոխկոցը։ Հաջորդ օրը Սուրիկն ինձ ասաց.

— Ուկա՛ս, ես մեծ եմ արդեն, չէ՞։

— Այո,—պատասխանեցի ես,—միայն թե ինձ Ուկաս մի ասա, այլ՝ Ղուկաս։

— Եթե ասեմ Ղուկաս, ինձ էլ կթողնե՞ս գնդակ խաղամ ձեզ հետ։

— Իհարկե,—ասացի ես։

Այժմ Սուրիկը այլևս ինձ Ուկաս չի ասում, մայրիկն էլ դժգոհ չէ նրանից, տատիկն էլ։ Տնեցիքին բացե չի նստում։ Երբ դուրս ենք գալիս բակ՝ գնդակ խաղալու, ամենից առաջ քայլում է Սուրիկը, կուրծքը դուրս գցած, մեծի կեցվածք ընդունած։

— Դե սկսենք,—ասում է նա ու առաջինը ինքն է հարվածում գնդակին։

ՀԱՍՄԻԿ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ
(Սևանի 8-ամյա դպրոցի 8-րդ դաս. աշ.)

## ԿԱԿԱՉ

Գարուն է, դեռ աշխարհ չեկած՝
Թոշնում ես, դու, սիրուն կակաչ։
Ջուր մի՛ թոշնիր, աչքերդ բա՛ց,
Շուրջդ դաշտն է լայնատարած,
Իսկ դու՝ նրա վարդը անգին.
Խաղաղ նայիր ծաղկող կյանքին,
Ապագային նայիր սիրով,
Ժպտա քո ալ թերթիկներով,
Իսկ թե թոշնես դու այս ամառ,
Աշխարհին տուր քո գույնը վառ,
Որ դրոշը մեր հայրենի
Է՛լ ավելի բոսոր լինի։

ԱՆՆԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(Երևանի № 50 դպրոցի
9-րդ դաս. աշակերտուհի)

## ԱՄՊԵՐ

Ամպեր, ամպեր հեռավոր,
Մերթ մռայլ եք, մերթ խնդուն,
Մերթ ճչում եք ահավոր,
Սև մութ կապում երկնքում։

Երբ թափում եք հորդ անձրև,
Կանաչում են լեռ ու ձոր,
Հետո չվում եք, ամպեր,
Հավքերի պես թևավոր։

Կուզեմ թռչել միշտ վերև,
Շրջել ձեզ հետ անդադար,
Երկնից թափել հորդ անձրև,
Ծաղկով զուգել լեռ ու քար։

ՍԱՀԱԿ ՀՈՎՍԵՓՅԱՆ
(Վ. Թալինի Մ. Գորկու անվան
դպրոցի 4-րդ դաս. աշ.)



ԿԱԿԱՉՆԵՐ

ԳԱԳԻԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ
(Երևան, 13 տարեկան)



# ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ

Երևի ոչ մի տեղ այնքան շեշտված չեն լինում աստղերը, նրանց տիեզերական վայրի, անմատչելի գեղեցկությունը, որքան Սևանի ափին։ Երբ լուսնկա գիշերներին լույսի ճառագայթները արտացոլվում են սև ջրերի մեջ, երկինքը, Սևանը, ամեն ինչ այնքան լուսեղեն են դառնում, որ մարդ ուզում է նստել, նայել հորիզոնին, ընկալել մթության հետ սիրտը սողոսկող անորոշ վախը, երազել։ Եվ երբեմն միայն ընկնել հաճելի, երազային անզգայության մեջ, զգալ հովի հաճելի շոյանքը։

Այսպիսի տրամադրությամբ էին համակվել և իրենք։ Նայում էր ընկերոջ աստղային լույսով ողողված դեմքին, նկատում նրա հանգստությունը, աչքերում երկացող ռոմանտիկ փայլը և զարմանում։ Իր փոթորկուն, աշխույժ ընկերոջը, որին չէր կարող զսպել ոչ մի բան, այժմ լռեցրել էին։ ի՞նչը, տիեզե՞րքը, պարզապես գիշերվա լռությու՞նը։ Տեսնելով նրա երկինք ուղղված հայացքը, որոշեց՝ տիեզերքը։

— Այդ ո՞նց է, որ այսօր չես խոսում,— կատակեց ինքը և զղջաց։

Այդպիսի րոպեին չպետք է կատակեր։ Թվաց, թե ընկերոջ գլխում ծավալվում են նվիրական խորհրդածություններ, որոնց ընդհատելը սխալ կլիներ։ Հետո՝ ընկերը ավելի լավն էր լռության ժամանակ։ Հաճելի էր այժմ նրան նայելը։

Ընկերն արեց մի վրդովված շարժում և շարունակեց լռել։ Կրկին աչքերի արտահայտությունը վերագտավ իր երազային տեսքը. «Ռոմանտիկ տղա է Տիգրանը»,— նորից մտածեց ինքը։

Ու կրկին անցան լռության ծանր, ծանծրալի րոպեները։ Ի՞նչ էր մտածում ընկերը։ Շատ կուզեր իմանալ. գուցե ինքը ևս տարվեր դրանով, չծանծրանար։

— Գեղեցիկ է,— հանկարծ խոսեց ընկերը՝ հայացքը մեղմ ծփացող ջրերից չհեռացնելով։

— Այո,— հաստատեց ինքը։ — Իսկապես գեղեցիկ է։— Բայց նա ավելորդ էր համարում այդ մասին խոսելը։ Իրեն թվում էր, թե գեղեցիկի մասին չպետք է խոսել, այն պետք է միայն զգալ։

— Տեսնո՞ւմ ես, Մեծ Արջի համաստեղությունն է,— ցույց տալով նրա իմացած միակ սիստեմը, ասաց ընկերը։— Քեզ չի՞ թվում, որ այն խորհրդավոր է և գուցե այդ պատճառով էլ՝ գեղե-

ցիկ: Իսկ խորհրդավոր է այն պատճառով, որ այնտեղ, Միցար աստղի շուրջը մարդիկ են ապրում: Գուցե նրանք էլ մեզ են նայում հիմա և մտածում այդ մասին:

Ընկերոջ մտքի այս արտասովոր ճախրումը զարմացնում էր հետզհետե: Նրա ասածը թվաց բանաստեղծություն, գուցե այդ պատճառով էլ՝ կեղծ: Նա այն կարծիքին էր, որ չափածո ոչ մի գրվածք ճշմարտության հատիկ չի պարունակում: «Կեղծ ռոմանտիկ է,— մտածեց նա,— և այդ բանը գալիս է գրքերից»:

— Ի՞նչ կարծիքի ես,— հարցրեց ընկերը:

— Չգիտեմ, ես այդպես երբեք չեմ մտածել, չեմ նկատել, որ Միցարը խորհրդավոր է: Եթե նկատեի անգամ, դժվար թե այդպիսի բան մտածեի: Ինձ թվում է, թե բոլոր աստղերն էլ խորհրդավոր են: Մի՞թե ամեն տեղ մարդիկ են ապրում:

—Իսկ որտեղ մարդիկ չեն ապրում, աստղերը հենց դրանից են խորհրդավոր: Նրանց շուրջը դատարկ է լինում, փչում է դատարկության խորհրդավոր շունչը:

Վերջին խոսքերը Տիգրանն ասաց խոր համոզմունքով, իրեն պատկերացնելով այդ վիճակում: Ինքը կրկին զարմացավ: Խելոք տղա էր ընկերը, ինչպես երևում է, ինքը դեռևս լավ չէր ճանաչում նրան: Լավն էր նա լուռ ժամանակ:

— Լավ բան չէ՞ տիեզերագնաց լինելը,— կրկին խոսեց ընկերը և այս անգամ նրա դեմքը անօրինակ թախիծով էր պարուրված:

Ինչքան էլ հաճելի լիներ խոսակցությունը և Սևանը, քունն ավելի զորավոր էր, և որոշեց կարճել խոսակցությունը:

— Չգիտեմ, տիեզերագնաց չեմ եղել:

— Գիտեմ, որ չես եղել: Բայց պատկերացրու քեզ այդ դերում: Տիեզերանավը լողում է հեռուներ... Կայծկլտում են աստղերը...

— Ես վառ երևակայություն չունե՛մ,— արդեն անհամբերությամբ, զրույցի ավարտին սպասելով, գոչեց ինքը:

— Ափսո՜ս, որ չունես,— իր հերթին նուրբ, համարյա աննկատելի խայթեց ընկերը: Բայց ինքը հասկացավ նրա նուրբ ծաղրը և վիրավորվեց:

— Դե լավ, գնանք,— կրկին անբացատրելի թախիծով համակված ձայնով ասաց Տիգրանը:— Ափսո՜ս, որ երևակայություն չունես, բայց երբ ձեռք բերես, կգանք, կնստենք Սևանի ափին, դու էլ կզգաս այն, ինչ ես եմ զգում, կհասկանաս ինձ:

Նրանք սկսեցին լուռ քայլել դեպի հանգստյան տունը: Իսկ ինքը արդեն ափսոսում էր, որ փչացրեց ընկերոջ երազային տրամադրությունը, խոհերը: Իրեն չէին հետաքրքրում նման բաներ, բայց ընկերը տարված էր նրանցով: Իսկապե՞ս չէր հասկանում ընկերոջը, թե՞ հասկանում էր, բայց կեղծ, բանաստեղծական էր գտնում ժամերով ափին նստելը, երազելը, բանաստեղծորեն խոսելը: Երևի վերջինն էր ճիշտ: Ոչինչ, մյուս անգամ ձեռք կբերի ֆանտազիա: Ու կրկին հիշեց ընկերոջ նուրբ, թախծոտ հումորը: Քունը փախավ աչքերից:

Ոսկեզօծված ավազի վրայով անտրամադիր և լուռ քայլում էին:

*ՎԱՀՐԱՄ ԹԱԹԻԿՅԱՆ*
*(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 8-րդ դաս. աշ.)*

*Նկարազարդումը կատարել է Երևանի Աղայանի անվան դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ*
*ՎԱՀԱՆ ԲՈՋԱՐՅԱՆԸ*



ԱՐԵՎ ՕՐ

*ԱՍՏՂԻԿ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*
*(Երևան, 7 տարեկան)*





*Պլաստիլինե այս արձանիկները պատրաստել է Երևանի Նելսոն Ստեփանյանի անվան մանկապարտեզի սան ԱՐՄԵՆ ՕՀԱՆՅԱՆԸ, 6 տարեկան*

## ՓՈՔՐԻԿ ԹՌՉՈՒՆ

Է՜յ, սիրունիկ անհոգ թռչուն,
Ծլվլալով ո՞ւր ես թռչում.
Մերթ սարերն ես դու սլանում,
Մերթ ամպերի մեջ չքանում,
Իղձեր չունե՞ս դու սրտիդ մեջ,
Թռչում ես անվե՜րջ — անվե՜րջ։

*ԼԻԼԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ*
*(Մեղրի. Ստ. Շահումյանի անվան դպրոցի աշակերտուհի)*

## ԾՏԻ ԵՐԳԸ

Ես մի ծիտ եմ ծլվլան,
Թևեր ունեմ թռվռան։
Ամբողջ օրը պարտեզում
Ճանճ ու մժեղ եմ որսում։

Կեր եմ տանում ծիտիկիս՝
Դեղնակտուց ձագուկիս,
Ուտի, որ շուտ մեծանա,
Ինձ պես սիրուն ծիտ դառնա։

*ԱՐԵՎԻԿ ՋԻԼԻՆԳԱՐՅԱՆ*
*(Նոյեմբերյանի շրջան, գյուղ Ջուջևան, 6-րդ դաս. աշ.)*

## ԷԼ ՄԻ՛ ԳՆԱ

Սիրուն թիթեռ, փոքրիկ թիթեռ,
Էլ մի՛ թռիր տագնապած,
Տե՛ս, արև է, և օր կա դեռ,
Երեկոն ուշ կիջնի ցած։

Էլ մի՛ գնա, էլ մի՛ գնա,
Չեմ հալածի քեզ կրկին,
Սիրուն թիթեռ, ինձ մոտ մնա,
Խինդով լցրու մեր այգին,

*ՀՌԻՓՍԻՄԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*
*(Երևանի №47 դպրոցի աշակերտուհի)*

## ԳԻՐՔ

Ինչքա՜ն հուշեր քո էջերում
Դեռ կան պահված,
Ինչքա՜ն գանձեր՝ քո էջերում
Դեռ թաքնված։
Դու մի ծով ես, ոչ թե վտակ,
Ու այդ ծովում
Շատ դժվար է խորասուզվել
Մինչև հատակ։

*ՋԱՎԵՆ ՄԵԼՔՈՒՄՅԱՆ*
*(Ադր. ՍՍՌ, Շամախու շրջան, Մադրասայի դպրոց)*

# ԳԱՐՈՒՆ

Խոսք՝ ՆԵԼԼԻ ՇԱՀՈՒՅԱՆԻ
(Երևանի № 56 դպրոցի 4-րդ դասարանի աշակերտուհի)

Երաժշտությունը՝ ՋՈՒԼԻԵՏԱ ԱՎԱԳՅԱՆԻ
(Երևանի № 56 դպրոցի դասատու)

Allegro moderato

Ա - րի գա -րու՛ն ա - րի գար-նան հո - վեր բեր,
կար-միր ա - րե - վի պայ-ծառ շո - ղեր բեր
կա - նաչ գոր- գեր փը - ռիր սա - րին ու ձո - րին
թող թը - թեր տա ծաղ - կի իմ խըն - ձո - րե - նին:

1. Արի, գարու՛ն, արի,
Գարնան հովեր բեր,
Կարմիր արևի
Պայծառ շողեր բեր:

Կրկներգ.

Կանաչ գորգեր փռիր
Սարին ու ձորին,
Թող թփեր տա, ծաղկի
Իմ խնձորենին:

2. Թող ամպը որոտա,
Փայլակը շողա,
Թափվի հորդ անձրև,
Ջյան սիրտը դողա:

3. Արի, գարու՛ն, արի,
Նախշուն հավքեր բեր,
Գույնզգույն ծաղիկներ,
Կարմիր վարդեր բեր:



ԳԾՈՒԿԴ.
ՄԱՆՈՒԿ ԱՎԵՏԻՍՅԱՆ
(Երևան, 10 տարեկան)

ԴԱՐՈՒՆ
ԱՐՄԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ
(Երևանի №63 դպրոցի առաջին դաս. աշ.)



# ԳԱՅԼՆ ՈՒ ԳԱՌԸ

Գայլը գառին հանդիպեց,
Մի այսպիսի հարց տվեց.
— Ինչո՞ւ դու չես երևում,
Ախր քեզ շատ եմ սիրում։
Գառը նայեց զարմացած
Եվ գայլին այսպես ասաց.
— Մեր շունն էլ քեզ է սիրում,
Բա ինչո՞ւ չես երևում։

ԽՈՅԵՑՅԱՆ ԳՅՈՒԼՆԱՐԱ
(Սպիտակի №3 դպրոցի աշակերտուհի)

## ԲԱՌԱՇՂԹԱ

1. Արևմտահայ առաջին կին գրողը։ 2. Աստղադիտարան՝ Հայաստանում։ 3. Նկարիչ։ 4. Հայ նշանավոր զորավար։ 5. Հատուկ ձևով մշակված կաշի, որը հնում ծառայում էր որպես գրելու թուղթ։ 6. Թագավորական գլխարկ։ 7. Միջնադարյան հայ առակագիր։ 8. 7-րդ դարի հայ մաթեմատիկոս։ 9. Սովետական Միության նավատորմի ադմիրալ, հայ։ 10. Էջմիածնի նախկին անունը։ 11. Գետ՝ պատմական Հայաստանում, որի ափին 5-րդ դարում տեղի ունեցավ ճակատամարտ։ 12. Քաղաք՝ հին Հայաստանում։ 13. Գավառ՝ Արևմտյան Հայաստանում։ 14. Ամիս՝ ըստ հին հայկական տոմարի։ 15. Հերոս՝ հայկական էպոսից։ 16. Գավառ՝ Հայաստանում, որտեղ տեղի են ունեցել գյուղացիական ապստամբություններ։ 17. Քաղաք՝ Հայաստանում, որը Բագրատունիների օրով դարձավ մայրաքաղաք։ 18. Գավառ՝ Հայաստանում, որը հայտնի է իր գյուղացի ընակիչներով։ 19. Տղամարդու անուն։



20. Զինվորական ախոյան՝ պատմական Հայաստանում։ 21. Ճարտարապետական կոթող։ 22. Հայ ականավոր փիլիսոփա։ 23. Հայ ականավոր գրող։ 24. Հայաստանի հին անունը։

Կազմեց՝ ԷՄՄԱ ԱՎԱԳՅԱՆ
(Վրացական ՍՍՌ, Ախալքալաքի շրջան, Բարալեթի միջնակարգ դպրոցի աշակերտուհի)



ՃԱԿՆԴԵՂԱՀԱՎԱՔ
ԲԱԲԿԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

Տրվում է անվճար՝ «Պիոների» 6-րդ համարի հետ։









Արտեկ։ Կա՞ արդյոք մի պիոներ, որ լսած չլինի այս հմայիչ անունը. Երազած չլինի կախարդական Արտեկի մասին, որի գրկում արդեն 40 տարի է հարյուրավոր երեխաներ են հանգստանում։

*Լուսանկարները՝*

*ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ*



